# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# №: 1 ● 1985

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# Տաղ Ամանորի

Սայլն է գալիս,
Փետուրների միջով ձմռան
Սայլն է գալիս...
Քառասմբակ երեք ձիուկ
լծակցում են սքանչելի այս ընթացքին...
Եվ գույներն են համաձայնվում
գիշերային ցնծուն պահի գույների հետ,
Եվ Արարատ սարի գահին՝
աղավնակերպ սպիտակ լույս,
որ իջնում է սայլի վրա, ճանապարհին...
Փրփուր-փրփուր ձյուների մեջ սայլն է գալիս
և սայլի մեջ Մանուկն ահա.
արքայական է ծիրանին,
ու գլխին՝ թագ,
և գավազանն է աջ ձեռքի
ցուցամատի նման պարզած
դեպի հովիտն Արարատի,
ուր գյուղերը լույսերի մեջ
փարախների նման բույլ-բույլ
սպասում են ընծայաբեր այս վայրկյանին...
Ուր տոնական լույսն՝ տարբեր
գաղտագողով,
դռները բաց չեն համբերում
Ոստան, [illegible]ն ու Երևան...
Սայլն է գալիս.
Փետուրների միջով ձմռան սայլն է գալիս:
Եվ սայլի մեջ
ի՜նչ ընծաներ բազմապիսի,
ամեն մեկի համար՝ հատուկ,
ով՝ ինչ ուզի,
ու... մեր սիրտն է պատվիրատուն...
Փո՞քր ես,
հիմա մի տարով էլ կմեծանաս,
ու թե մեծ ես, հոգ մի՛ անի,
կմանկանաս մի տարվա չափ...
Նա գալիս է, որ ընծա տա՝ հոգսը տանի:
Նա գալիս է որպես եղբայր ու որպես պապ...
Հե՜յ, տղենե՜ր Երևանի,
Հե՜յ, գյուղերում ապրող քաջե՜ր, բարի աջե՜ր.
ընծայաբեր այս մանուկին ելեք-տեսեք:
Ձեռքն ի ծոցին քանի տղեկ երգ են երգում,
թե՝ մեր տունը առաջինն ենք...
Եվ աղջիկներ աղավնակերպ աչուկներով,
(նրանց ներսում
Արարատից իջնող լույսն է աղբյուրացել...)
Հե՜յ, տղենե՜ր Երևանի,
Հե՜յ, գյուղերում ապրող քաջե՜ր,
սայլն է գալիս
Եվ Հայաստան երկիրն ահա շունչը պահած՝
մասն է դառնում սքանչելի այս ընթացքի:

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# ՆՈՒՇԻԿՆ ՈՒ ՓՈՒՇԻԿԸ

(նովելություն)

Մեծ է մեր գյուղը: Մեծ է իր մեծ ու փոքր մարդկանցով, իր նկանաչ ու փարթամ բնությամբ, իր ոլոր-մոլոր, քարքարոտ և միայն տեղ-տեղ ասֆալտապատ ճանապարհներով: Բայց նրա իսկական հմայքը ծերունիներն են, գյուղի տարեց մարդիկ, որոնք, թվում է թե, շա՜տ, շա՜տ երկար են ապրել այս աշխարհում, այդ պատճառով էլ գյուղում տարածված ավանդույթների մասին խոսում են որպես ականատեսներ:

Ամեն երեկո նրանք հավաքվում են աղբյուրի մոտ և ամեն մեկը, ո՞վ իմանա, ո՞րերորդ անգամ, պատմում ու վերապատմում է իր կյանքը, լսած ու կարդացած պատմությունները և, իհարկե, դրանց մեջ մեծ տեղ տալով նաև իրեն: Թերևս դրանից է, որ մեզ նրանք շատ ծեր են թվում, այնքան ծեր, որ հավանաբար գիտեն անգամ յոթդռնանի քարայրի գաղտնիքն ու Տիրան թագավորի գերեզմանի տեղը: Ես սիրում եմ մեր գյուղը ոչ միայն սերնդեսերունդ անցնող այդ զրույցների, այլև նրա համար, որ մինչև օրս էլ այնտեղ են ապրում իմ սիրելի Նուշիկ կատուն ու Փուշիկ ոզնին, որոնց հետ ընկերացել եմ մի քանի տարի առաջ: Հիմա նույնիսկ զարմանում եմ, թե առաջին օրերին ինչու էի վախենում նրանցից, երբ նրանք պտտվում էին իմ շուրջը, երբեմն հանկարծակի դիպչում ինձ և իսկույն էլ փախչում՝ ավելացնելով իմ վախն ու զայրույթը: Դա տարիներ առաջ էր...

Գյուղի մեր հին տնից փոքր-ինչ այն կողմ մեր թոնրատունն էր: Այնտեղ էր տատս իր համով լավաշները թխում, կարտոֆիլն ու ճակնդեղն էլ թոնրի մեջ էր խորովում: Իսկ աշնանը, մանկական խաղերից հոգնած ու մրսած երեխաներիս թոնիրը ոչ միայն տաքացնում էր, այլև մեծերի կողքին նստելու և նրանց համովհոտով զրույցները լսելու առիթ տալիս:

Երբ ամենքը թոնրի շուրջը գրավում էին իրենց տեղերը, թոնրատուն էր մտնում Նուշիկը: Գալիս էր մի տեսակ հանդիսավոր, տանտիրոջ իրավունքով ու դեռ ներս չմտած, դռների մոտ կանգնում էր, ասես ստուգում բոլորի ներկայությունը, ապա դանդաղ տեղավորվում մեր կողքին:

Նստում էր ու բավականությամբ նայում բոլորին: Եթե տանը նորեկ կամ անծանոթ մարդ էր լինում, Նուշիկը հատկապես ուշադիր էր նայում նրան. անպայման անցնում էր նրա մոտով և հուշիկ քսվում նրան: Եթե, բան է, անծանոթը չէր նկատում Նուշիկին, նա չէր հուսահատվում ու ձեռք չէր քաշում նրանից: Նորից ու նորից էր պտտվում նորեկի շուրջը, նորից քսվում, և երբ անծանոթը որևէ կերպ իր վերաբերմունքն էր ցուցաբերում Նուշիկի հանդեպ, նա խաղաղված գալիս նստում էր իր տեղը՝ Փառանձեմ տատիս կողքին: (Ես հետո հասկացա, որ Նուշիկն այդպիսով ստուգում էր անծանոթի չար կամ բարի լինելը):

Երբ որևէ հետաքրքիր բան էին պատմում և փոքրերս հանույքով ծիծաղում էինք, այդ պահերին Նուշիկի աչքերը փայլում էին, կայծկլտում դեղին կայծերով: Թվում էր, թե նա էլ է ծիծաղում: Իսկ եթե պատահում էր, որ իրեն էլ բանի տեղ էին դնում, գոնե շոյում մեջքը, Նուշիկը բավականությունից քթի տակ մի երգ էր մռմռում ու երբեմն էլ ձախ թաթով սղալում իր բեղերը ճիշտ այնպես,



digitised by A.R.A.R.@



ինչպես քեռի Դավոն էր իր բեղերը սըրում՝ տատիս քաշած թթի թունդ օղու երկրորդ բաժակը խմելուց հետո:

Մի խոսքով, Նուշիկը մեր տան լիիրավ անդամն էր և տատիս ամենալավ օգնականը, բոլորս սիրում էինք Նուշիկին, իսկ տատս մենակ մնալիս նաև զրուցում էր նրա հետ:

Նուշիկն ամենայն բարեխղճությամբ էր կատարում իր պարտականությունները՝ ոչնչացնելով աներես մկներին, որոնք զարմանալի արագությամբ գտնում էին տատիս պահած ձավարն ու շաքարը, երբեմն էլ մտնում հացի պահարանը: Բացի դրանից, Նուշիկը հավաքում էր նաև խաղողի վազերի տակ թաքնվող հավերին, նրանց լցնում հավաքույնը, կամ հարևանի հավերին քշում մեր բակից: Նա չէր հանդուրժում անծանոթ կենդանիներին ու վըռընդում էր մեր բակից, իսկ եթե չէին ենթարկվում, կռվում էր նրանց հետ:

Մի անգամ, լսելով նրա աղեկտուր մլավոցը, դուրս վազեցի: Նուշիկը նստել էր ետնի թաթերի վրա և վախեցած նայում էր առջևը եղած փշե գնդին ու լիզում աջ թաթը: Ոզնին, որ չգիտես որտեղից հայտնըվել էր մեր բակում, դուր չէր եկել Նուշիկին, և սա ուզում էր հեռացնել նըրան իր տիրույթներից: Որքան զայրացած էր Նուշիկը, այնքան էլ համառ էր ոզնին, որին ես հետո սիրով Փուշիկ անվանեցի: Նուշիկը, աջ թաթը սպառնալից բարձրացրած, ուզում էր անպայման խըփել Փուշիկի գլխին, բայց Փուշիկն էլ ճարպիկ էր և գլուխն անմիջապես քաշում էր ներս, դառնում փշե գունդ, և խեղճ Նուշիկը միշտ վրիպում էր, թաթը խփում փշերին ու մլավում, զայրանում էր ու նորից հարվածում: Երևում էր, Փուշիկին դուր էր գալիս այդ խաղը, և նա, որպես մարտահրավեր, հաճախ էր գլուխը դուրս հանում փշե պատյանից՝ ավելի ևս գրգռելով Նուշիկին: Տեսնելով, որ Նուշիկը վախենում է, Փուշիկը ինքն էր առաջ գնում: Նուշիկը քայլ առ քայլ նահանջում էր, պտտվում նրա շուրջը, փնտրում խոցելի տեղեր...

Չգիտեմ, Նուշիկն ընդունե՞ց իր անզորությունը, թե՞ պարզապես ձանձրացավ միօրինակ խաղից, բայց Փուշիկն էլ հաստատվեց մեր բակում և նրանց հաճախ կարելի էր տեսնել միասին, թեև, կարծում եմ, Նուշիկը բոլորովին դեմ չէր թեկուզ մի անգամ խփել Փուշիկի գլխին:

Գյուղում ամենից շատ վախենում էի օձերից: Նրանք ամռանը երբեմն հայտնըվում էին խաղողի այգում կամ տան ետնի քարուտներում: Նուշիկն առանձնապես անհաշտ էր նրանց նկատմամբ և, տատիս ասելով, երկու օձ էր սպանել: Իսկ մի անգամ ես ինքս տեսա նրանց կռիվը: Օձերը երկուսն էին և հանկարծակի հայտնվեցին մեր բակում: Ես սովորականի պես բարձրացել էի ծառը և, բավականին թութ ուտելուց հետո, ցանկանում էի իջնել, ու հենց բնի մոտ նկատեցի օձերին: Վախից այնպես ճչացի որ... Ըստ երևույթին ձայնս փորս էր ընկել, և օգնության եկողներ չեղան: Բայց գուցե Նուշիկն իրոք լսել էր, որովհետև պատուհանի գոգից, ուր արևկող էր անում նա, երկար մի ցատկով հայտնվեց ուղիղ օձերի դեմ և անսովոր չափով ուռցնելով մեջքը, սեղմած ատամների արանքից փշտացրեց ու նշան բռնելով պատրաստվեց ցատկի: Օձերը լարվեցին և, կծիկ դարձած, գալարների միջից գլուխները տնկած ցցվեցին Նուշիկի դեմ: Նուշիկը ետ-ետ էր գընում, մի պահ կանգնում, ուռցնում մեջքը և զայրացած փշտացնում, հարմար պա՞հ էր որոնում, թե՞ պարզապես ուզում էր իր կողմը գրավելով օձերին՝ հեռացնել ծառի բնից, որի վրա ես էի լալկվել: Օձերից մեկը լարվեց ու լախտի նման շրմփաց ճիշտ այն տեղում, ուր վայրկյան առաջ Նուշիկն էր կանգնած: Բայց նա արդեն տեղում չէր և մի թաթը բարձրացրած՝ բռնցքամարտիկի պես խաղացնելով, հարմար պահ էր որոնում օձին հարվածելու համար: Իսկ այդ ընթացքում գրոհի անցավ մյուս օձը: Նուշիկն, իհարկե, ուշադիր էր, և հենց օձը թռավ դեպի նա, Նուշիկը մի ցատկով հայտնվեց օձի թիկունքում և, մինչ վերջինս շուռ կգար, Նուշիկը փոխեց գրոհի ուղղությունը ու թռավ գալարների միջից բարձրացող մյուս օձի վրա: Թռավ, բայց և նույն վայրկյանին աղիողորմ մլավեց ու ցատկեց ծառի ճյուղին: Խե՜ղճ իմ Նուշիկ, մտածեցի, հիմա կսատկի: Աչքերս լցվեցին արցունքով:





digitised by A.R.A.R.@



Նուշիկն անվերջ մլավում էր, մռլտում և բերանը քսում ծառի ճյուղին:

Տեսնելով, որ Նուշիկն այլևս չի հարձակվում, օձերը դանդաղ սողացին դեպի այգի: Ես, որ արցունքների միջից դեռ նայում էի Նուշիկին, հանկարծ տեսա, թե ինչպես մի պահ նորից փայլեցին նրա աչքերը և ավելի հարմար տեղավորվելով ծառի ճյուղին, լարվեց, ասես պատրաստվելով նոր մի ցատկի: Նայելով շուրջս, ես ոչինչ չտեսա, մինչև որ օձերից մեկը, հենց նա, որ խայթել էր Նուշիկին, հանկարծակի ծառս եղավ: Այդ պահին որտեղից որտեղ հայտնված Փուշիկը բռնել էր օձի պոչը և փշե կծիկ դարձել: Օձը ողջ մարմնով հսկա շրջան գործելով գլխով հարվածեց Փուշիկին: Բայց Փուշիկը պինդ էր բռնել իր զոհին: Մյուս օձը փորձեց իր ուժը և պոչով շեղակի հարվածեց Փուշիկին: Վերջինս տեղից շարժվեց, բայց չթողեց օձի պոչը: Ամբողջովին Փուշիկով տարված օձերն ասես մոռացել էին Նուշիկին: Այն պահին, երբ ազատ օձը պատրաստվում էր մի նոր հարվածի, Նուշիկը, որսալով պահը, հենց ծառի ճյուղից ցատկեց նրա վրա և ատամները խրեց օձի վիզը: Օձը փորձեց իր գալարների մեջ առնել Նուշիկին, բայց Նուշիկը ճանկերով գետնին էր սեղմել նրա մեջքը: Մինչ Նուշիկն այնքան ծամեց օձի կոկորդը, որ վերջինս կամաց-կամաց ուղղվեց ու անշարժացավ, Փուշիկը դեռ շարունակում էր պահել իր ուժասպառ զոհին, որն իր երկճյուղ լեզուն հանած վերջին ճիգերն էր գործադրում ազատելու կարծես գետնին մեխված իր պոչը: Երբ օրհասական կռիվն արդեն ավարտվում էր, մի կերպ իջա ծառից ու լեղապատառ վազեցի տուն: Լսելով եղելությունը, մերոնք դուրս թափվեցին, իսկ տատս, ծնկներին խփելով, վշվշում էր.

— Ափսո՛ս Նուշիկս, ափսո՛ս Նուշիկըս...

Մարտի դաշտում միայն օձերի դիակներն էին: Նուշիկն ու Փուշիկը չէին երևում: Ամբողջ այգին տակնուվրա արեցինք, Նուշիկը չկար ու չկար: Նա հայտնըվեց երկու օր հետո. նիհարել էր, աչքերի երբեմնի փայլը՝ խամրել, իսկ ներքին ծնոտն անսովոր ուռել էր, կարմրել: Տատս, դարձյալ վշվշալով, մի ամանի մեջ կաթ լցրեց Նուշիկի համար: Նուշիկը ոչինչ չկերավ: Անընդհատ մլավում էր և ծնոտը քսում գետնին կամ ծառերի չոր կեղևին՝ երևի այդպես հանգստացնելով վերքի ցավը: Դրանից հետո Նուշիկն հաճախ էր անհետանում և երբ մի քանի օր հետո նորից վերադարձավ, ուրախությամբ նկատեցինք, որ նա բավականին կազդուրվել էր: Թե ուր էր գնում Նուշիկը և ինչպես բուժեց ինքն իրեն, չգիտեմ, տատս ասում էր, որ կենդանիները գիտեն իրենց դեղը և վայրի խոտերով են բուժում իրենց: Գուցե և ճիշտ է, կենդանիներն ավելի լավ են ճանաչում մայր բնությունը, քան մարդիկ: Ինչևէ, որոշ ժամանակ անց Նուշիկը բոլորովին առողջ էր և նորից տիրաբար քայլում էր մեր բակում ու երբեմն էլ խաղում Փուշիկի հետ:

Այդ դեպքից հետո Նուշիկն ինձ համար դարձավ իսկական հերոս, և ես ուզում էի անպայման նրան տանել մեր տուն՝ Երևան: Տատս, իհարկե, դեմ էր, մերոնք էլ չէին ուզում: Բայց ես էլ ո՞ր օրվա Թուշիկն էի (այդպես էր տատս ինձ անվանում), որ իմ ասածը չանեի. թշերս ուռցրի և մի այնպիսի լաց դրի, որ տատս, ճարը կտրած, համաձայնվեց, որ Նուշիկին մի քանի օրով մեզ հետ տանենք Երևան:

Ուրախությանս չափ չկար: Ինձ թվում էր, թե Նուշիկն էլ էր ուրախ, որ Երևան էր գալու: Ես արդեն պատկերացնում էի, թե ինչպես են նրան դիմավորելու փոքր եղբայրներս՝ Գեղամն ու Վահիկը, որոնց պատմելու էի Նուշիկի հերոսության մասին:

Որքան հեռանում էինք գյուղից, Նուշիկն այնքան անհանգստանում էր ու մըլավում: Տանն էլ Նուշիկը չհանգստացավ և ոչինչ չկերավ: Երկու օր մնաց մեր տանը, բայց աչքը միշտ դռան կողմն էր և կամ նստում էր լուսամուտի գոգին ու նայում հեռուները:

Երրորդ օրվա երեկոյան զրնգաց մեր հեռախոսը: Վերցրեցի լսափողը: Տատիկս էր:

— Ա՛յ չաչանակ, բոլ չի՞ էդ անասունին տանջես,— առանց սովորական հար-





digitised by A.R.A.R.@

ցուփորձի, լսեցի տատիս ձայնը,— ախր էն խեղճ հայվանի հոգին էլ դուրս էկավ...

Ես հասկացա, որ տատիս ասած «խեղճ հայվանը» Փուշիկն է: Իսկ տատս շարունակում էր.

— Էլ տեղ չթողեց, տունն ու բախչեն ոտի տակ տվեց, Նուշիկին է ուզում: Համ էլ, ա՜յ բալա, իմ ձեռ ու ոտն է կապվել, առանց Նուշիկի տեղ գնալ չեմ կարողանում:

Ես նոր միայն հիշեցի, որ Նուշիկը սովորական կատու չէր տատիս համար: Իր բոլոր ծառայություններից բացի, Նուշիկը նաև տատիս կենդանի լապտերն էր: Գիշերները տատս ազատ ման էր գալիս բակում ու այգում: Նուշիկը գնում էր նրա առջևից և, երբեմն-երբեմն ետ նայելով, իր աչքերի դեղին լույսով լուսավորում էր տատիս ճանապարհը:

Հաջորդ օրը հայրս Նուշիկին տարավ գյուղ: Իսկ ես անհամբեր սպասում եմ, թե նորից ե՞րբ կտեսնեմ իմ սիրելի Նուշիկին ու Փուշիկին, ի՞նչ նոր արկածներով կանցնեն նրանց օրերը..

**ՆԱԻՐԱ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**

**Երևանի № 162 միջն. դպրոցի 9-րդ դասարանի աշակերտուհի**



**ԼԱԼԱ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ**
**Մարտունու շրջ., գ. Մադինա**



**ԱՆԱՀԻՏ ՀԱԿՈԲՅԱՆ, 15 տ., գ. Ծովագյուղ**



digitised by A.R.A.R.@

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՄԱՇՏՈՑ ԵՎ ԿՈՄԻՏԱՍ

Արտաժամյա պարապմունքը նվիրված էր Մաշտոցին ու Կոմիտասին: Պարապմունքի ժամանակ զեկուցում կարդացվեց երկու մեծերի կյանքի ու գործունեության մասին: Խոսեցին, վկայակոչեցին, արտասանեցին: Բոլորս լցվել էինք Մաշտոցով ու Կոմիտասով:

Պարապմունքից հետո խոսք եղավ գյուղից արտագնաց աշխատանքի մեկնողների մասին: Ուսուցիչներից մեկն ասաց, որ արտագնաց աշխատանքի մեկնած հայրերի բացակայությունն երեխաների վրա նկատելիորեն բացասաբար է անդրադառնում: Այսինչի հայրը երեկ գնացել է, տղան այսօր «երկու» գնահատական է ստացել:

— Մենակ երեխայի վրա՞ է ազդում,— բազմանշանակ ասաց մեկը:

— Էլ ու՞մ,— հարցրեցի ես:

— Ընտանիքի...

— Հայրերի առողջության...

— Կոլտնտեսության աշխատանքների...

Մերուժանը, որ մինչ այդ Մաշտոցի ու Կոմիտասի մասին իր լսածի հետ էր, ինքն էլ միջամտեց.

— Մեսրոպ Մաշտոցի ու Կոմիտասի...

Պոռթկաց աշակերտների ծիծաղը: Ես սաստեցի նրանց: Լռեցան: Տղայի պատահական պատասխանի վրա խորհելով, բարձրաձայն մտածելով և մտքեր փոխանակելով, հանգեցինք այն մտքին, որ, այո՛, հետնորդների սխալը իր կնիքն է թողնում ոչ միայն իրենց, այլև նախնիների ճակատագրի վրա:

# ԻՄ ՊԱՊԻ ՊԱՊԸ

Տարեսկզբին մատյանի վիճակագրական բաժինը լրացնելու ժամանակ տղաներից մեկին հարցնում եմ իր հոր հայրանունը: Տղան չի կարողանում ասել: Ես դասարանի հետ ծիծաղում եմ նրա վրա:

Ազատ թեմայով շարադրություն եմ տվել, ու Մերուժանն կարդում է իր «Իմ պապի պապը» վերնագրով շարադրությունը:

— Հարյուր հիսուն տարի առաջ, երբ մեր պապերը Բյուրակնյա աշխարհից եկել են Ջավախք, իմ պապի պապ Նիկողոսը գնացել է գյուղից բավական հեռու լքված հող է տեսել ու բռնել է վարել: Մեկ էլ նկատել է, որ հարևան գյուղի կողմից մի խումբ տղամարդիկ են գալիս, որ իրեն ծեծեն ու զավթեն այդ հողակտորը: Նիկողոսը կանգնեցնում է եզները, արձակում արորն ու արորի ծայրից բռնած սպասում է: Եկողների ավագը ձեռքի ճիպոտը պարզելով, դեռ հեռվից ցույց է տալիս թումբն ու ասում.

— Է՜յ... դա մե՛ր հողն է, ու՞ր ես վարում:

Նիկողոսը, որ չափազանց ուժեղ մարդ է եղել, արորը փոքրիկ ճիպոտի պես բարձր բռնած ցույց է տալիս նույն թումբն ու կեղծ երկչոտությամբ ասում.

— Մեռնի՜մ ձեր արևուն, խեղճ մարդ իմ, հեռու Բյուրակներու երկրեն եմ գաղթի եկի, թողեք վարիմ, զիմ ճըժերն ու տուն պահիմ...

Եկողները որ տեսնում են սա Տորք Անգեղի պես մի մարդ է, հսկայական արորը մի ճիպոտի պես ձեռքում պահած թումբն է ցույց տալիս, վախեցած ետ են դառնում ու ծլկում:

— Մերուժա՛ն, շարադրությունդ լավ ես գրել, բայց թեման հին է: Քեզ ի՞նչն ստիպեց, որ այդքան հեռու գնաս ու պապիդ պապի մասին գրես:

— Ձեր ծիծաղը,— խորամանկ ժպիտով պատասխանեց տղան... —Դուք ծիծաղեցիք իր պապի անունը չիմացողի վրա, ես գրեցի իմ պապի պապի մասին:

# ՋԱՎԱԽՔԻ ԾԱՂԻԿՆԵՐ՝ ՇԻՐԱԶԻՆ

Ապրիլյան մի օր, դասի զանգը երբ եղավ, դասա-



digitised by A.R.A.R.@

րան գնալիս ուսուցիչներից մեկը գուժեց.

— Հովհաննես Շիրազն է մահացել:

Ցնցվեցի: Ասացի՝ երևի չար կատակ է անում: Դասարան մտա սովորականի պես, բայց ա՜յ քեզ զարմանք, աշակերտներն արտասովոր հայացքով նայում էին ինձ: Մի տեսակ արտասովոր լռությամբ ըսպասում են...

Մատյանն դրեցի ու դուրս եկա: Ուսուցչանոցից զանգահարեցի շրջանային թերթի խմբագրություն և, ավա՜ղ, գույժը ճիշտ էր: Վերադարձա դասարան: Նրանք արդեն ահով են ինձ նայում ու սիրտ չեն անում հարցնել:

— Հովհաննես Շիրազն է մահացել,— ասում ու չեմ կարողանում զսպել արցունքներս...

Իսկ նրա՞նք...

Սրբում եմ աչքերս ու մըտածում. ես ձեզ այսպես չգիտեի, ես կարծում էի ձեզ անկարելի է հուզել, բայց չէ, դուք լալիս եք, դուք կորստի ցավն զգացիք, դուք սիրտ ունեք...

Չար, չոր թվացող աշակերտներն հետո ո՞նց սկսեցին արցունքներից խեղդվելով արտասանել Շիրազի բանաստեղծություններից ... Իսկ աղջիկներից մեկը դարձավ ինձ, ասաց.

— Դուք գնացեք Երևա՜ն, մենք ձեր ազատ մնացող դասին լուռ կնստենք, գընացե՜ք Ջավախքի ձնծաղիկներ տարեք Շիրազին:

## ՏԽՈՒՐ ԶԳԱՑՈՒՄ

Վերջերս հատկապես աշակերտների ու աշակերտուհիների մոտ ընդհանուր



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

տետրեր են պահվում: Ահա այդպիսի մի տետր իմ ձեռքն է անցել, թերթում եմ: Արտիստների ու արտիստուհիների նկարներ... Վլադիմիր Վիսոցկի... Ալլա Պուգաչովա... ժողովրդական իմաստուն քառյակներ...

Կարծիքներ միմյանց մասին, նախշ ու զարդագրեր, խորհուրդ-խրատներ...

Ես փնտրեցի, բայց չգտա այդ տետրում մի տող մեր՝ ուսուցիչներիս խոսքերից, մեր մասին էլ մի տող չըգտա...

Մի՞թե մենք նրանց իրենց այդ տետրերին պահ տալու արժանի ոչինչ չենք ասում...

## ԻՆՉՈՒ ԵՄ ԱՏՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Տալիս եմ վերնագիրը՝ «Ինչու եմ ատում պատերազմը» և պահանջում բանավոր շարադրություն կազմել:

Ամեն մեկն իր կարողացածի չափով մեկնաբանում է պատերազմը:

Սա էլ սևաչ տղան է շարադրում.

— Մեր տանը կախված է իմ պապի մեծ եղբոր լուսանկարը: Նա զոհվել է մեծ Հայրենականում տասնինը տարեկան հասակում: Իմ պապը հիմա 55—56 տարեկան է, իսկ նրա տասնինը տարեկան եղբայրը մնացել է տասնինը տարեկան ու պատերազմի պատճառով չի կարողացել մեծանալ:

Ես ատում եմ պատերազմը, որովհետև նա չի թողել, որ իմ Հակոբ պապի Հովհաննես անունով եղբայրը մեծանա, հայր դառնա ու հետո դառնա պապ... Ես ու նրա թոռը խաղընկերներ կլինեինք:



digitised by A.R.A.R.@

## Ո՞Վ ՉԻ ՍԻՐՈՒՄ ԼԱՎ ԱՐԱՐՔԸ

Իններորդ դասարանում եմ: «Թմկաբերդի առումը» պոեմի մասին ենք խոսում: Ես պատահաբար հարցականով եմ արտասանում Թումանյանի հանրահայտ տողը. «Ո՞վ չի սիրում թեկուզ դուշման Լավ արարքը յավ մարդի...»

— Վատ մարդիկ... Վատ մարդիկ ոչ միայն թշնամու, այլև իրենց մերձավորի ու ընկերոջ լավ արարքը չեն սիրում... Նախանձից ու չարությունից չեն սիրում... Եվ իմ կարծիքով,— շարունակում է աղջիկը,— որպեսզի մարդ իմանա ինքը լա՞վն է, պետք է իրեն ստուգի: Եթե ընկերոջդ հաջողությամբ սրտանց ուրախանում ես, անկեղծորեն՝ առանց ձևացնելու, ապա դու իրոք լավ մարդ ես... Ավելի հեշտ են ընկերոջ անհաջողությամբ տխրում, քան թե հաջողությամբ ուրախանում:

## ՀԱԳՑՆՈՂԸ

Դասամիջոցին աշակերտների հետ մտերիմ զրույցներ եմ բացում:

Այս անգամ խոսում ենք աշակերտների հագուստների մասին:

— Քո ծնողները այսպիսի կոշիկներ, որ դու ես հագել, իրենց դպրոցական տարիներին երազում էլ չեն հագել,— ասում եմ աղջիկներից մեկին:

— Իմ կոշիկները ես առում,— հակաճառում է աղջիկը,— բա նրա կաշվե բաճկոնը ինչու՞ չես ասում...

— Սաղ մնա «խոպանը», «խոպանն» է՛ հագցրել,— խառնվում է երրորդը:

Ես այդ պահին նայում եմ դպրոցի միջանցքով քայլող սևազգեստ ջահել կնոջը, որի ամուսինը ձեռքը շատ փող գցելու մարմաջով տարված հեռուներն էր գնացել և վթարի մատնվեց:

— Նրա «սև շորերն» էլ է «խոպանն» հագցրել,— ասում է տղան:

## ՔԱՐՏԵԶԸ

Ամեն անգամ նոր թեմա անցնելիս կենսագրական համառոտ տեղեկություններ եմ տալիս հեղինակների մասին: Նկատել եմ, որ եթե ես տալիս եմ Արևմտյան Հայաստանի անունը, սևաչ տղայի աչքերում մի ուրիշ կրակ է վառվում:

Նա անգիր գիտի Վանա Խառակոնիսն ու Սեբաստիայի Բրգնիկը, Խարբերդի Հինկյանն ու Տարոնի Խասգյուղը (Հացեկաց)...

Մայրը մի օր բողոքեց.

— Մի քարտեզ ունի, ժամերով հակվում այդ քարտեզի վրա, նայում է, նայում: Կատարում է տնային առաջադրանքները, կարդում դասերն ու կրկին հակվում է քարտեզի վրա: Մի անգամ պատռեցի քարտեզը: Հավաքել էր կտորները: կրկին սոսնձել իրար ու նայում էր...Հիմա էլ նայելուց բացի նկարում է նույն քարտեզը որտեղ պատահի՝ գրականության ու մաթեմատիկայի տետրերում, դասագրքերի կողերին... Մեր ավտոտնակի երկաթյա դռան վրա էլ այդ քարտեզն է նկարել ու մի տեղ գրել «Նարեկավանք», մի տեղ «Բիթլիս», «Վանա լիճ», «Բյուրակնյա լեռներ»...

Բիթլիսի տակ էլ գրել է. «Վիլյամ Սարոյանի ծնողների քաղաքը»:

Երկար խորհելու առիթ է տալիս ինձ մոր բողոքը, սևաչ տղան ու այդ քարտեզը:

1.

Մի պապ է եղել,
Մի Ձմեռ պապ:
Եղել է հսկա
Մի սարի չափ:

Նրան տեսնողներ
Հիմա չկան:
Կախարդ է եղել
Նա իսկական:

Հանել է պարկից,
Հանել հատ-հատ,
Տվել ամենքին
Երգ ու հեքիաթ:

Ձմեռ ու ձյուն է
Շուրջը եղել,
Բայց ջերմություն է
Նա հեղեղել:

Եվ այնպես է միշտ
Եկել-անցել,
Որ քարերն էլ են
Ջերմ ժպտացել:

2

Բայց մեկը մի օր՝
Ձայնով հնչեղ,
Կանչել է՝ հեքիաթ
Ու երգ պետք չեն:

Հիմա, պա՛պ, դրանք
Էլ չեն անցնի՞:
Հեքիաթը մարդ չի
Կշտացնի:

3.

Լսել է պապն ու
Փշաքաղվել:
Գլխին սև ճող է
Ասես մաղվել:

Ընկել է պարկը
Ուսից նրա,
Եվ ինքն է ընկել
Պարկի վրա:

Ընկել, ծածկվել են
Հող ու քարով
Ու մնացել են
Հազար տարով...

4.

Իսկ Պապ... շատ էր պետք
Այնուհանդերձ,
Թեկուզ և փոքրիկ,
Թեկուզ և կեղծ:
Եվ մարդիկ ահա
Ամենուրեք
Փորձել են գտնել
Ինչ-որ մի ելք:



digitised by A.R.A.R.@




Պապեր են ընտրել
Իրենց միջից,
Լցրել պարկերը
Ամեն ինչից:

Փոքրերին մեկ-մեկ
Սիրաշահել,
Պապի կորուստը...
Թաքուն պահել:

5.

Բայց Պապը... գիտե՞ք,
Ապրում է դեռ,
Ուշքի է գալիս
Ամեն ձմեռ:

Ուզում է կրկին
Ելնել ու գալ,
Նոր-նոր հեքիաթներ,
Երգեր շաղ տալ,

Բայց վախենում է
Մեկն էլ մի օր
Լինի իր հանդեպ
Երախտամոռ,

Ասի՝ դարը քո
Ճուտ է անցել,
Եվ զուր ես քնից
Դու արթնացել...

6.

Էհե՜յ, լսեցե՛ք,
Փո՛քր ու մեծե՛ր,
Ձմեռը դարձյալ
Դուռն է բացել:

Ուր որ է՝ պիտի
Պապն արթնանա,
Եկեք նրա մոտ
Ելնենք գնանք:

Ասենք՝ քո շունչն է
Մեզ պակասում,
Մե՛ծ Պապ, քո գալն ենք
Մենք երազում:

7.

Նա կգա սիրով:
Իսկ թե չեկավ,
Ուրեմն՝ իրոք
Դեռ մեկը կա,

Որ... նվերներ է
Ուզում միայն,
Եվ երգ ու հեքիաթ
Խորթ են նրան:



digitised by A.R.A.R.@

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# ԱՐՋԻ ՎԱՐՁԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մոտկոր աշխարհի խոր ու մթին ծմակում մի արջ աշխարհ եկավ ու իր համար ականջը դինջ ապրում էր: Մի օր գետի եզերք դուրս գալով, ներքև նայեց և ի՞նչ տեսավ: Գետում մի տղա է լողանում: Արջն ինչքան հասկացավ, տղան գյուղի տղա չէր, քաղաքի տղա էր: Նա անտառ մտնող կածանով իջել է, ձեռքի ռադիոն ուժեղ միացրել, կախել ծառի ճյուղից ու ինքը ջրում սրթսրթալով լողանում է: Արջը մեկ ուզեց ինքն էլ մտնի ջուրը, տղային ցույց տա, թե ինչպես են լողանում լեռնային սրընթաց գետակում, բայց մտածեց՝ քաղաքից եկած հյուր տղա է, կվախենա: Ռադիոն թեթև երաժշտություն էր հաղորդում: Արջը կանգնեց զույգ ոտքերի վրա, թաթով վերցրեց ռադիոն, զգուշությամբ դրեց կանաչների մեջ ու սկսեց խառնել ալիքները: Մի ծանր պար, արջապար հաղորդեն, սիրով կլսի, պար կգա... Չէ, ցանկացած երաժշտությունը չկա: «Տեսնես ի՞նչ են մտածում կոմպոզիտորները»,— անցավ արջի մտքով: Մեկ էլ հաղորդավարն հայտարարեց. «Իսկ այժմ լսեցեք հայտարարություններ»: Վերջին հայտարարություններից արջն իմացավ, որ կրկեսին հարկավոր են արջեր: Ցանկացողները կարող են դիմել դիրեկցիային... Հեռախոսի համարն էլ ասացին:

Ուրեմն՝ կրկեսին արջ է հարկավոր, ցանկացողը պետք է շտապի: Մեր արջն էլ ոչ դես, ոչ դեն, ռադիոն այդպես թողեց, գետում թողեց լողացող տղային, փակեց իր պապենական որջը, երկու կաթիլ արցունք գլորեց հարազատ շեմին, փաթաթվեց իր ունեցած-չունեցած թանկարժեք մուշտակի մեջ ու ճամփա ընկավ դեպի քաղաք:

Քաղաքում նա միանգամից չներկայացավ կրկեսի դիրեկտորին, գործը հիմնավոր բռնելու համար (որպեսզի մերժում չստանար ու ստիպված ետ վերադառնար ու ծիծաղատեղ դառնար) վերցրեց հեռախոսն ու զանգ տվեց կրկեսի դիրեկտորին: Հրամայական տոնով ասաց.

— Քեզ մոտ մի շատ շնորհալի արջ եմ ուղարկում: Ընդունի՛ր: Ուրիշ ինչ հաստիքով էլ ցանկանա աշխատել, մի՛ խնայիր, տուն-տեղ թողել է, եկել, մի՛ վախեցի, մի օր Մոտկորի ծմակում լավությանդ լավությամբ կպատասխանի:

Դիրեկտորն ասաց.

— Շատ լավ, սիրով, բա ո՞նց, իհարկե, թող գա՛:

Արջն էլ գնաց ու կանգնեց դիրկետորի առաջ և նայեց հեռախոսին: Դիրեկտորը հասկացավ, որ հենց էս արջի համար են զանգ տվել: Դիրեկտորը ժպտաց և սիրալիր ասաց.

— Բարի լինի մեր տեսությունը: Զանգ էլ չտային, ես ձեզ սիրով կընդունեի: Հենց ձեր բախտից մի լավ վագրի տեղ ունեմ: — Ձեռքը մեկնեց կոճակին, քարտուղարուհին ներս մտավ:— Մեր արջ ապորը մի թուղթ ու գրիչ տուր, թող դիմում գրի:

— Սիրով, սիրով, իսկ սուրճ չպատրաստե՞մ:

— Բոլորը՝ հերթով:— Դիրեկտորը աչքով արեց քարտուղարուհուն:— Ուզում եմ վագր ձևակերպել: Զանգ են տվել:

— Ես միայն արջ կաշխատեմ, ես արջ եմ,— համեստությամբ ասաց արջը:

— Արջ էլ աշխատեք, ձեր ձեռքն ո՞վ է բռնել, մի հաստիք և կես՝ արջ աշխատեք, մի ամբողջ հաստիք վագր, մի հաստիք՝ նապաստակ, մի հաստիք՝ գայլ, մի հաստիք...

— Ես միայն արջ կաշխատեմ: Ես արջ եմ:

— Մի՛ վրդովվեք, խնդրում եմ, սուրճը՝ քա՞ղցր, դա՞ռը, ինչպե՞ս եք սիրում,— միջամտեց քարտուղարուհին, ժպտալով:

— Ես շատ եմ սիրում մոռ: Եթե մոռ ունես, սիրով,— անկեղծորեն պատասխանեց արջը:

— Այստեղ տանձ ու մոռ չկա: Այստեղ ծխախոտ է ու սուրճ: Մեկ-մեկ էլ՝ խմիչք:

— Տուն-տեղ, շրջապատ թողել եմ եկել, որ գործ անեմ, ոչ թե ծխախոտ ծխեմ կամ սուրճ խմեմ: Ես քո իմացածներից չեմ: Թե չես ընդունում, գնամ նորից զանգ տամ...

Դիրեկտորը չլսեց արջի ասած վերջին բառերը, քարտուղարուհուն ասաց, որ էն



digitised by A.R.A.R.@



պահած արջի հաստիքը թող այսուհետև զբաղեցնի Մոսկվայից եկած այս հրաշալի արջը, որը շուտով կզարդարի կրկեսը:

Արջն ընդունվեց աշխատանքի, և հանուն ճշմարտության պետք է ասել, որ լավ էր կատարում իր պարտականությունները: Նա այստեղ էր եկել Մոսկվայի ծմակից, բայց հանդիսականներին ասել էին, որ այս արջը խաղացել է աշխարհի առաջնակարգ կրկեսներում, և քանի որ միայն մեր օդն է նրա վրա գալիս, եկել է այստեղ աշխատելու: Շատ չանցած, նրա նկարը երևաց ազդագրերում: Նա առաջին անգամ երբ հանդես էր գալու հեռուստատեսությամբ, շատ էր ափսոսում, որ իր ցեղակիցները Մոսկվայի անտառներում չեն կարող իրեն նայել, որովհետև այնտեղ հեռուստացույց չկա:

Կրկեսի բոլոր արտիստները, փիղն ու վագրը, առյուծն ու ձին, շունն ու աքլորը, անգամ էն, էն, էն, էշը, բոլորը, բոլորը թաքուն կամ աչքերես ծիծաղում էին, դրա համար վատառողջ էին: Իսկ արջը, մեր



digitised by A.R.A.R.@

արջը ուրիշ էր. որքան խաղում էր՝ այնքան բացվում էին թոքերը, շնչառությունը գերազանց էր: Նա սուրճ չէր խմում, թե ի՞նչ է, գլուխս ունել է, թարմանալ եմ ուզում, ինչպես ուրիշներն էին անում:

Բայց ինչպես եղավ, մի անգամ հիվանդացավ: Շատ կարոտեց ծննդավայրը, հիշեց կածաններն, ծայրերը, տանձուտները, մասրենիները ու կարոտից հիվանդացավ: Դիրեկտորն ու քարտուղարուհին այցելեցին արջին, առողջություն ցանկացան, ասացին, որ դու իրավունք չունես հիվանդանալու, կրկեսն առանց քեզ կորած է:

Արջը շոյված զգաց իրեն.

— Խոստանում եմ այլևս չհիվանդանալ:

Մեր արջը ազատ օրերը օգտագործում էր խելացի: Նա շատ աշխատանքներ տարավ իր մարզչի հետ, միշտ օգտակար խորհուրդներով օգնում էր նրան: Նա այնպես հմտորեն պարապեց իր մարզչի հետ, կարճ ժամանակում այնքան գաղտնիքներ պարզեց, որ մարզիչը վաստակավորի կոչում ստացավ:

Ահա և եկավ հերթական արձակուրդ վերցնելու ժամանակը: Դիրեկտորը շատ սիրալիր ասաց.

— Առաջնակարգ առողջարան եմ ուղարկում քեզ: Բոլորովին ձրի: Պարգապես քեզ պարգևատրում ենք:

— Ինձ ի՞նչ է եղել, որ առողջարան գնամ: Ո՛չ ծխում եմ, ո՛չ խմում: Մի անգամ հիվանդացա, էն էլ կարոտի հիվանդություն էր:

— Իսկ որտե՞ղ ես որոշել հանգստանալ: Մարդ պիտի առողջ ժամանակ իրեն հետևի, որ չհիվանդանա, թե չէ, աստված չանի, հիվանդությունը որ բույն գտավ, բույնը քանդելը դժվար է...

— Որոշել եմ վերադառնալ ծննդավայրս,— կարոտով ասաց արջը:— Քանի տարի է՝ չեմ եղել: Հիմա կասեն՝ մեծ բան է դարձել, մոռացել է իր ծննդավայրի ճամփան:

— Շատ գեղեցիկ ես մտածել,— ժպտաց դիրեկտորը:— Ես էլ կուզենայի վերադառնալ իմ ծննդավայրը, բայց... անձնագիրս կորցրել եմ ու չգիտեմ, թե որտեղ եմ ծնվել:

— Ես անձնագիր չեմ էլ ունեցել, դրա համար չեմ մոռացել իմ ծննդավայրը: Նրա ամեն մի քոլուտը, տանձուտը, կածանները, ձայները... ոչինչ, ոչինչ չեմ մոռացել:— Հպարտությամբ ու կարոտախառն ասաց արջը՝ դիրեկտորին ու քարտուղարուհուն պարզելով միամտաբար հրճվանք:

— Իսկ ավելի լավ չի՞ լինի միասին ծով գնանք, պար կգաս, ժողովուրդը կուրախանա և արժանի նվերներ կտան,— ասաց քարտուղարուհին:

— Իսկ ավելի հարմար չի՞ լինի դու և դիրեկտորը գաք մեր Մոտկորի ծմակը, մենք ձեզ տանձ ու մասուր կտանք:

Դիրեկտորը ծիծաղեց, վերցրեց արջի դիմումը և մակագրեց. «Համաձայն եմ: Տալ հերթական արձակուրդը: Թույլատրվում է արձակուրդն անցկացնել ծննդավայրում՝ Մոտկորի ծմակում»:

Մոտկորի անտառը գրկաբաց ընդունեց իր որդուն: Ծանոթ ծառեր, ձորեր, մութ անտառներ: Ահա և այն տեղը, որտեղ նա լսեց կրկեսում արջի կարիք լինելու հայտարարությունը: Հիմա, ափսոս, ո՛չ ռադիոն կա, ո՛չ էլ ջրում լողացող տղան, որ նրան շնորհակալություն հայտնի: Ահա և ծանոթ գազանները, մանկության ընկերները: Ահա և պապենական իր որջը: Ներս մտած-չմտած՝ չորս կողմից հարձակվեցին վրան: Մինչև հասկացրեց, որ ինքն էս տան բնակիչ է եղել, մի քանի տարի առաջ է դուռը փակել ու գնացել, հիմա շատ է կարոտել, արձակուրդն այստեղ է որոշել անցկացնել, որ կարոտն առնի,— ուշ էր արդեն, արջի մուշտակը քանի տեղից պատռել էին: Բանն ավելի վատ վախճան կունենար, եթե հանկարծ պատռված մուշտակի միջից չընկներ դիրեկտորի մակագրությամբ արջի դիմումը: Նրանք հասկացան, որ դա կարևոր թուղթ է և իզուր են այդպես վարվում ընկերոջ հետ: Շտապ ասեղ-թել բերին, հենց վրան էլ կարեցին ճղած տեղերը, ուշադիր նայեցին այն ազդագրերը, որտեղ տպված էր իրենց թանկագին ընկերոջ նկարը, գրկից գիրկ անցկացրին նրան, լավ պատիվներ տվին, պատմեցին իրենց կյանքից, ասացին, որ հիմա ամեն ինչ դժվարացել է, անգամ կասկածում էին, թե դու արջ ես, կարծում էին՝ որսորդ ես, մտել ես արջի մուշտակի մեջ ու եկել ես ականջ դնելու մեր զրույցներին, մեր գաղտնիքները իմանալու... Դրա համար հարձակվեցինք վրադ:

Արջը ներեց նրանց: Շատ ուրախ ժամանակ անցկացրեց հետները, իսկ երբ եկավ բաժանման օրը, աչքերը սրբելով ասաց.

— Հենց թոշակի անցնեմ, էլ քաղաքում մի օր չեմ մնա, կգամ ծմակ, ծննդավայրս:



digitised by A.R.A.R.@

ՆՈՐԱՅՐ ԵՓՐԵՄՅԱՆ

# Պապս շատ է ծերացել

Պապս շատ է
ծերացել,
Պակասել լույսն
աչքերի,
Ձմեռ պապի է
դարձել,
Ձյուն է մաղվել
մազերին:
Ձեռնափայտով է քայլում
Պապս արդեն այս
տարի:
Նրա մազերն են
փայլում
մաքրությունով
ամպերի:



ԻՐԻՆԱ ՏՈԿՄԱԿՈՎԱ

# Ինչո՞ւ

Ուրբաթը ինչ երկար օր է:
Սպասում եմ: Չեմ խաղում:
Ընկերս ասաց՝ ուրբաթ օրը
Կերևամ ես ձեր թաղում:

Օրը անցավ: Ուշ է արդեն,
Քնելու ժամն է հասել...
Նա համարյա հասուն մարդ է,
Ո՞նց կարող է սուտ ասել:

# Ես լսեցի

Ես ատում եմ Տարասովին.
Նա խփել է մի այծյամ:
Ես լսեցի, թե այդ մասին
Ոնց էր պատմում ցածրաձայն:

Այծյամի ձագն անասելի
Որբ է հիմա ու տրտում:
Ես ատում եմ Տարասովին,
Թող նա կորչի իրենց տուն:

Թարգմ. ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆԻ

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@




ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# Հազարամյա ճամփորդը

Հազարամյակների ճանապարհ անցնելով, մեզ է հասել այսպիսի մի բանաստեղծություն.

Ո՜ տայր ինձ զծուխն ծխանի
Եւ զառաւօտն Նաւասարդի,
Զվազելն եղանց
Եւ զվարգելն եղջերուաց.
Մեք փող հարուաք
Եւ թմբկի հարկանէաք,
Որպէս օրէն է թագաւորաց:

Ասում են, հայոց արքաներից մեկը գերության մեջ այս խոսքերն է արտասանել մեռնելուց առաջ: Կարոտել է հայրենի աշխարհը, հեթանոսական ժամանակների նոր տարվան, որ Նավասարդ էին կոչում:

Այսօր մենք կարդում ենք երկու հազար տարի առաջ ստեղծված այս տողերը և հասկանում արքայի կարոտը:

Ահա և Քուչակի հռչակավոր հայրեններից մեկը.

Ես աչք ու դու լույս, հոգի, առանց
լույս՝ աչքն խավարի.
Ես ձուկ ու դու ջուր, հոգի, առանց
ջուր՝ ձուկն մեռանի,
Երբ զձուկն ի ջրեն հանեն, ւ ի այլ ջուր
ձգեն, նա ապրի,
Երբ զիս ի քենե զատեն, քան
զմեռնելն այլ ճար չի լինի:

Այսպես կարող էին ասել միայն միջնադարի մարդիկ, միայն նրանք կարող էին հանդես բերել այսպիսի մանկական անմիջականություն շրջապատող աշխարհի նկատմամբ, այսպիսի համեմատություններով խոսելը բնորոշ էր նրանց:

Այսպես ահա դարերի ընթացքում ամեն մի ժողովուրդ բանաստեղծությանը պահ է տվել այն ամենաթանկը, բարձրն ու գեղեցիկը, որ կրել է իր հոգևոր աշխարհում: Հետնորդներիս հասած այդ հսկայական հարստությունը ընտրյալների համար չէ, այլ պատկանում է բոլորին, ոչ միայն տվյալ ժողովրդին, այլև ողջ մարդկությանը:

Մարդկային հոգևոր այդ գանձերից օգտվելու համար պետք է այն հասկանալու կարողություն ունենալ կամ ձեռք բերել:

Բանաստեղծություն հասկանալը տարբեր է բնագիտության կամ պատմության դասագրքերում գրածը կարդալ-հասկանալուց: Դուք կարող եք հասկանալ բառը, նախադասությունը, բառերով արտահայտված միտքը: Բայց բանաստեղծությունը ավելին է, քան այդ բոլորը միասին վերցրած: Պետք է հասկանալ ահա այդ «ավելին», որ կազմում է բանաստեղծության բուն էությունը: Այն, ինչ գրված է ֆիզիկայի դասագրքում, մեզ կարող է հաղորդել ֆիզիկայի ամեն մի լավ մասնագետ, փոքր տարբերություններով: Այստեղ գրվածը հասկանալու համար մենք պետք է խորանանք միայն ֆիզիկական փաստերի տրամաբանության մեջ: Մինչդեռ բանաստեղծություն կարդալիս մենք գործ ունենք մարդկային հոգևոր աշխարհի հետ: Ոչ թե ընդհանրապես մարդկային հոգևոր աշխարհի հետ, այլ կոնկրետ այս կամ այն ժամանակներում ապրող մարդու հոգևոր աշխարհի հետ:

Հիշենք Տերյանի հետևյալ տողերը.

Ցրտահար, հողմավար,



digitised by A.R.A.R.@

Դողացին մեղմաբար
Տերևները դեղին,
Պատեցին իմ ուղին:

Տեսեք, թե որքա՜ն տարբեր է Տերյանը հեթանոս շրջանի կամ միջնադարի տաղերգուներից: Բանաստեղծը իրեն համակած տրամադրությամբ է տեսնում տերևները. տերևները մրսում են, մենակ ու անպաշտպան հողմի բերանն ընկած (հողմավար):

Տերևների դեղին գույնը, որն ուրիշ դեպքում կարող էր ուրախ, զվարթ զուգորդումներ արթնացնել, այս դեպքում չարագուշակ խորհրդանիշ է դառնում. մեռած տերևները պատում են հերոսի ուղին՝ նա այլևս պայծառ հեռանկար չի տեսնում, նա հուսահատ է ու մենակ, նրա ճանապարհը տանում է դեպի մահ ու կործանում: Եվ դեռ մնում է տողերի երաժշտությունը՝ դ-երի ընդգծվող հնչումը, մաքուր հանգերը, շեշտված և անշեշտ վանկերի կանոնավոր հերթափոխությունը (եթե ուշադիր լսենք, շեշտը միշտ ընկնում է երկրորդ վանկի վրա): Տողերի բուն հնչումի մեջ կարծես զգացվում է աշնանային գորշ օրվա ծանր, ճնշող թախիծը, երբ մարդուն թվում է, թե աշխարհում ուրախ ու պայծառ բան ոչ եղել է, ոչ կլինի: Այս հոգեվիճակն ու արտահայտման եղանակը բնորոշ էր Տերյանի ժամանակներին: Բանաստեղծի ապրած ու արտահայտած այդ հոգեվիճակը մեր մեջ, մնացած բոլոր զգացմունքների հետ մեկտեղ, արթնացնում է ներքին խոր համակրանք «տանջվող ու որբ աղամորդու» (դարձյալ Տերյանի խոսքերն են) նկատմամբ:

Բանաստեղծի պատկերած զգացմունքների մեջ մենք տեսնում ենք նաև մեր զգացմունքները, մեր ապրումները: Ճշմարիտ բանաստեղծություն կարդալիս մենք այն զգացումն ենք ունենում, թե այդ ամենը մենք ինքներս ապրել ու զգացել ենք, բայց ահա բանաստեղծը այնքան ճշգրիտ ու հստակ խոսքեր է գտել արտահայտման համար:

Բանաստեղծությունը օգնում է, որ ինքներս հասկանանք մեզ:

Բայց որպեսզի բանաստեղծությունն օգնի, որ մենք հասկանանք մեզ, պետք է, որ մենք էլ հասկանալ կարողանանք բանաստեղծությունը:

Զրույցների շարքը, որ այս համարից սկսած՝ դուք կկարդաք «Պիոներ»-ում, այդ նպատակն է հետապնդելու՝ օգնել հասկանալու բանաստեղծությունը:

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Ինչպես է ծնվում մայրենին

**Փոքրիկ տղայի փոքրիկ սրտիկում**
**Նախ խլրտում է անուշիկ մի բան,**
**Ասես կրծքի տակ մտել է ճնճղուկ**
**Ու թպրտում է, որ թռչի գնա:**

**Հետո փոքրիկի փոքրիկ լեզվակին**
**Խուտուտ է տալիս անուշիկ մի բան,**
**Ասես միրգ լինի, շողշողուն հակինթ,**
**Բայց ա՜յ, անունը չգիտի տղան:**

**Մեկ էլ՝ թը՜ռ, մի օր փոքրիկի սրտից**
**Ոսկեթև մի բան թռչում խնդագին,**
**Քաղցր ղողանջով, կանչ ու ծիծաղով**
**Գալիս, թառում է նախշուն լեզվակին:**

**Ինչքան խոսում է, երգում ոսկեբառ,**
**Աշխարհը այնքան ոսկով է լցվում,**
**Իսկ նրա նախշուն լեզվակին ճարտար**
**Ամառ թե ձմեռ միշտ միրգ է հասնում:**



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

Ներկայացնում ենք 1985 թ. օրացույցը՝ հայկական ամսանուններով և օրանուններով:

Հայաստանում գործածված թվարկություններից հնագույնը «Բուն թվականություն հայոց» է, որն սկսվում է մ. թ. ա. 2492 թ. նավասարդի 1-ից (օգոստոսի 11-ից): Հին օրացույցն ուներ 12 ամիս՝ յուրաքանչյուրը 30 օրով, և 5 կամ 6 օրից կազմված «հավելյաց» ամիս (օրացույցում 31-րդ օրը Մաշտոց է անվանված պայմանականորեն):

ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

ԸՍՏ «ԲՈՒՆ ԹՎԱԿԱՆՈՒԹՅՈ…

# 4476

11.08.1984—10.08.1985

| | ՀՈՒՆՎԱՐ<br>ՆԱՎԱՍԱՐԴ | ՓԵՏՐՎԱՐ<br>ՀՈՌԻ | ՄԱՐՏ<br>ՍԱՀՄԻ | ԱՊՐԻԼ<br>ՏՐԵ | ՄԱՅԻՍ<br>ՔԱՂՈՑ | ՀՈՒՆ…<br>ԱՐԱՑ… |
|---|---|---|---|---|---|---|
| ԿԻՐԱԿԻ | | | | | | |
| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | | | | 1 ԱՐԵԳ | | |
| ԵՐԵՔՇԱԲԹԻ | 1 ԱՐԵԳ | | | 2 ՀՐԱՆՏ | | |
| ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | 2 ՀՐԱՆՏ | | | 3 ԱՐԱՄ | 1 ԱՐԵԳ | |
| ՀԻՆԳՇԱԲԹԻ | 3 ԱՐԱՄ | | | 4 ՄԱՐԳԱՐ | 2 ՀՐԱՆՏ | |
| ՈՒՐԲԱԹ | 4 ՄԱՐԳԱՐ | 1 ԱՐԵԳ | 1 ԱՐԵԳ | 5 ԱՀՐԱՆՔ | 3 ԱՐԱՄ | |
| ՇԱԲԱԹ | 5 ԱՀՐԱՆՔ | 2 ՀՐԱՆՏ | 2 ՀՐԱՆՏ | 6 ՄԱԶԴԵՂ | 4 ՄԱՐԳԱՐ | 1 ԱՐԵ… |
| ԿԻՐԱԿԻ | 6 ՄԱԶԴԵՂ | 3 ԱՐԱՄ | 3 ԱՐԱՄ | 7 ԱՍՏՂԻԿ | 5 ԱՀՐԱՆՔ | 2 ՀՐԱ… |
| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | 7 ԱՍՏՂԻԿ | 4 ՄԱՐԳԱՐ | 4 ՄԱՐԳԱՐ | 8 ՄԻՀՐ | 6 ՄԱԶԴԵՂ | 3 ԱՐ… |
| ԵՐԵՔՇԱԲԹԻ | 8 ՄԻՀՐ | 5 ԱՀՐԱՆՔ | 5 ԱՀՐԱՆՔ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 7 ԱՍՏՂԻԿ | 4 ՄԱՐ… |
| ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 6 ՄԱԶԴԵՂ | 6 ՄԱԶԴԵՂ | 10 ՄՈՒՐՑ | 8 ՄԻՀՐ | 5 ԱՀ… |
| ՀԻՆԳՇԱԲԹԻ | 10 ՄՈՒՐՑ | 7 ԱՍՏՂԻԿ | 7 ԱՍՏՂԻԿ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 6 ՄԱ… |
| ՈՒՐԲԱԹ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 8 ՄԻՀՐ | 8 ՄԻՀՐ | 12 ԱՆԻ | 10 ՄՈՒՐՑ | 7 ԱՍՏ… |
| ՇԱԲԱԹ | 12 ԱՆԻ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 13 ՊԱՐԽԱՐ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 8 ՄԻՀ… |
| ԿԻՐԱԿԻ | 13 ՊԱՐԽԱՐ | 10 ՄՈՒՐՑ | 10 ՄՈՒՐՑ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 12 ԱՆԻ | 9 ՁՈՊ… |
| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 13 ՊԱՐԽԱՐ | 10 ՄՈՒ… |
| ԵՐԵՔՇԱԲԹԻ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 12 ԱՆԻ | 12 ԱՆԻ | 16 ՄԱՆԻ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 11 ԵՐԵ… |
| ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | 16 ՄԱՆԻ | 13 ՊԱՐԽԱՐ | 13 ՊԱՐԽԱՐ | 17 ԱՍԱԿ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 12 ԱՆ… |
| ՀԻՆԳՇԱԲԹԻ | 17 ԱՍԱԿ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 18 ՄԱՍԻՍ | 16 ՄԱՆԻ | 13 ՊԱ… |
| ՈՒՐԲԱԹ | 18 ՄԱՍԻՍ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 19 ԱՆԱՀԻՏ | 17 ԱՍԱԿ | 14 ՎԱ… |
| ՇԱԲԱԹ | 19 ԱՆԱՀԻՏ | 16 ՄԱՆԻ | 16 ՄԱՆԻ | 20 ԱՐԱԳԱԾ | 18 ՄԱՍԻՍ | 15 ԱՐ… |
| ԿԻՐԱԿԻ | 20 ԱՐԱԳԱԾ | 17 ԱՍԱԿ | 17 ԱՍԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 19 ԱՆԱՀԻՏ | 16 ՄԱ… |
| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | 21 ԳՐԳՈՒՌ | 18 ՄԱՍԻՍ | 18 ՄԱՍԻՍ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 20 ԱՐԱԳԱԾ | 17 ԱՍ… |
| ԵՐԵՔՇԱԲԹԻ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 19 ԱՆԱՀԻՏ | 19 ԱՆԱՀԻՏ | 23 ԾՄԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 18 ՄԱ… |
| ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | 23 ԾՄԱԿ | 20 ԱՐԱԳԱԾ | 20 ԱՐԱԳԱԾ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 19 ԱՆ… |
| ՀԻՆԳՇԱԲԹԻ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 21 ԳՐԳՈՒՌ | 25 ՑՐՈՂ | 23 ԾՄԱԿ | 20 ԱՐ… |
| ՈՒՐԲԱԹ | 25 ՑՐՈՂ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 26 ՆՊԱՏ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 21 ԳՐ… |
| ՇԱԲԱԹ | 26 ՆՊԱՏ | 23 ԾՄԱԿ | 23 ԾՄԱԿ | 27 ՎԱՀԱԳՆ | 25 ՑՐՈՂ | 22 ԿՈ… |
| ԿԻՐԱԿԻ | 27 ՎԱՀԱԳՆ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 28 ՍԻՄ | 26 ՆՊԱՏ | 23 ԾՄ… |
| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | 28 ՍԻՄ | 25 ՑՐՈՂ | 25 ՑՐՈՂ | 29 ՎԱՐԱԳ | 27 ՎԱՀԱԳՆ | 24 ԼՈՒ… |
| ԵՐԵՔՇԱԲԹԻ | 29 ՎԱՐԱԳ | 26 ՆՊԱՏ | 26 ՆՊԱՏ | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 28 ՍԻՄ | 25 ՑՐ… |
| ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 27 ՎԱՀԱԳՆ | 27 ՎԱՀԱԳՆ | | 29 ՎԱՐԱԳ | 26 ՆՊ… |
| ՀԻՆԳՇԱԲԹԻ | 31 ՄԱՇՏՈՑ | 28 ՍԻՄ | 28 ՍԻՄ | | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 27 ՎԱ… |
| ՈՒՐԲԱԹ | | | 29 ՎԱՐԱԳ | | 31 ՄԱՇՏՈՑ | 28 ՍԻ… |
| ՇԱԲԱԹ | | | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | | | 29 ՎԱ… |
| ԿԻՐԱԿԻ | | | 31 ՄԱՇՏՈՑ | | | 30 ԳԻ… |



digitised by A.R.A.R.@

«ՀԱՅՈՑ»-Ի

# 77

11.08.1985—10.08.1986

# 1985

| ՀՈՒԼԻՍ ՄԵՀԵԿԱՆ | ՕԳՈՍՏՈՍ ԱՐԵԳ | ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՀԵԿԱՆ | ՀՈԿՏԵՄԲԵՐ ՄԱՐԵՐԻ | ՆՈՅԵՄԲԵՐ ՄԱՐԳԱՑ | ԴԵԿՏԵՄԲԵՐ ՀՐՈՏԻՑ |
|---|---|---|---|---|---|
| | | **1 ԱՐԵԳ** | | | **1 ԱՐԵԳ** |
| 1 ԱՐԵԳ | | 2 ՀՐԱՆՏ | | | 2 ՀՐԱՆՏ |
| 2 ՀՐԱՆՏ | | 3 ԱՐԱՄ | 1 ԱՐԵԳ | | 3 ԱՐԱՄ |
| 3 ԱՐԱՄ | | 4 ՄԱՐԳԱՐ | 2 ՀՐԱՆՏ | | 4 ՄԱՐԳԱՐ |
| 4 ՄԱՐԳԱՐ | 1 ԱՐԵԳ | 5 ԱՀՐԱՆՔ | 3 ԱՐԱՄ | | 5 ԱՀՐԱՆՔ |
| 5 ԱՀՐԱՆՔ | 2 ՀՐԱՆՏ | 6 ՄԱԶԴԵՂ | 4 ՄԱՐԳԱՐ | 1 ԱՐԵԳ | 6 ՄԱԶԴԵՂ |
| 6 ՄԱԶԴԵՂ | 3 ԱՐԱՄ | 7 ԱՍՏՂԻԿ | 5 ԱՀՐԱՆՔ | 2 ՀՐԱՆՏ | 7 ԱՍՏՂԻԿ |
| **7 ԱՍՏՂԻԿ** | **4 ՄԱՐԳԱՐ** | **8 ՄԻՀՐ** | **6 ՄԱԶԴԵՂ** | **3 ԱՐԱՄ** | **8 ՄԻՀՐ** |
| 8 ՄԻՀՐ | 5 ԱՀՐԱՆՔ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 7 ԱՍՏՂԻԿ | 4 ՄԱՐԳԱՐ | 9 ՁՈՊԱԲԵՐ |
| 9 ՁՈՊԱԲԵՐ | 6 ՄԱԶԴԵՂ | 10 ՄՈՒՐՑ | 8 ՄԻՀՐ | 5 ԱՀՐԱՆՔ | 10 ՄՈՒՐՑ |
| 10 ՄՈՒՐՑ | 7 ԱՍՏՂԻԿ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 6 ՄԱԶԴԵՂ | 11 ԵՐԵԶԿԱՆ |
| 11 ԵՐԵԶԿԱՆ | 8 ՄԻՀՐ | 12 ԱՆԻ | 10 ՄՈՒՐՑ | 7 ԱՍՏՂԻԿ | 12 ԱՆԻ |
| 12 ԱՆԻ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 13 ՊԱՐԽԱՐ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 8 ՄԻՀՐ | 13 ՊԱՐԽԱՐ |
| 13 ՊԱՐԽԱՐ | 10 ՄՈՒՐՑ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 12 ԱՆԻ | 9 ՁՈՊԱԲԵՐ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ |
| **14 ՎԱՆԱՏՈՒՐ** | **11 ԵՐԵԶԿԱՆ** | **15 ԱՐԱՄԱԶԴ** | **13 ՊԱՐԽԱՐ** | **10 ՄՈՒՐՑ** | **15 ԱՐԱՄԱԶԴ** |
| 15 ԱՐԱՄԱԶԴ | 12 ԱՆԻ | 16 ՄԱՆԻ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 11 ԵՐԵԶԿԱՆ | 16 ՄԱՆԻ |
| 16 ՄԱՆԻ | 13 ՊԱՐԽԱՐ | 17 ԱՍԱԿ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 12 ԱՆԻ | 17 ԱՍԱԿ |
| 17 ԱՍԱԿ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 18 ՄԱՍԻՍ | 16 ՄԱՆԻ | 13 ՊԱՐԽԱՐ | 18 ՄԱՍԻՍ |
| 18 ՄԱՍԻՍ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 19 ԱՆԱՀԻՏ | 17 ԱՍԱԿ | 14 ՎԱՆԱՏՈՒՐ | 19 ԱՆԱՀԻՏ |
| 19 ԱՆԱՀԻՏ | 16 ՄԱՆԻ | 20 ԱՐԱԳԱԾ | 18 ՄԱՍԻՍ | 15 ԱՐԱՄԱԶԴ | 20 ԱՐԱԳԱԾ |
| 20 ԱՐԱԳԱԾ | 17 ԱՍԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 19 ԱՆԱՀԻՏ | 16 ՄԱՆԻ | 21 ԳՐԳՈՒՌ |
| **21 ԳՐԳՈՒՌ** | **18 ՄԱՍԻՍ** | **22 ԿՈՐԴՈՒԻՔ** | **20 ԱՐԱԳԱԾ** | **17 ԱՍԱԿ** | **22 ԿՈՐԴՈՒԻՔ** |
| 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 19 ԱՆԱՀԻՏ | 23 ԾՄԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 18 ՄԱՍԻՍ | 23 ԾՄԱԿ |
| 23 ԾՄԱԿ | 20 ԱՐԱԳԱԾ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 19 ԱՆԱՀԻՏ | 24 ԼՈՒՍՆԱԿ |
| 24 ԼՈՒՍՆԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 25 ՑՐՈՆ | 23 ԾՄԱԿ | 20 ԱՐԱԳԱԾ | 25 ՑՐՈՆ |
| 25 ՑՐՈՆ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 26 ՆՊԱՏ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 21 ԳՐԳՈՒՌ | 26 ՆՊԱՏ |
| 26 ՆՊԱՏ | 23 ԾՄԱԿ | 27 ՎԱՀԱԳՆ | 25 ՑՐՈՆ | 22 ԿՈՐԴՈՒԻՔ | 27 ՎԱՀԱԳՆ |
| 27 ՎԱՀԱԳՆ | 24 ԼՈՒՍՆԱԿ | 28 ՍԻՄ | 26 ՆՊԱՏ | 23 ԾՄԱԿ | 28 ՍԻՄ |
| **28 ՍԻՄ** | **25 ՑՐՈՆ** | **29 ՎԱՐԱԳ** | **27 ՎԱՀԱԳՆ** | **24 ԼՈՒՍՆԱԿ** | **29 ՎԱՐԱԳ** |
| 29 ՎԱՐԱԳ | 26 ՆՊԱՏ | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 28 ՍԻՄ | 25 ՑՐՈՆ | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ |
| 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 27 ՎԱՀԱԳՆ | | 29 ՎԱՐԱԳ | 26 ՆՊԱՏ | 31 ՄԱՇՏՈՑ |
| 31 ՄԱՇՏՈՑ | 28 ՍԻՄ | | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | 27 ՎԱՀԱԳՆ | |
| | 29 ՎԱՐԱԳ | | 31 ՄԱՇՏՈՑ | 28 ՍԻՄ | |
| | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | | | 29 ՎԱՐԱԳ | |
| | 31 ՄԱՇՏՈՑ | | | 30 ԳԻՇԵՐԱՎԱՐ | |



Օրացույցը կազմելուն մասնակցել է ճարտարապետ՝ ԱՐՄԵՆ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԸ

digitised by A.R.A.R.@



ԼԻԶԱ ԺԱՂԱՐՅԱՆ

# Խեղճ եղնիկը

Ոզնին դնչիկը հողին քսելով գնաց, գնաց ու տեսավ մասրենու տակ մի փոքրիկ... եղնիկ: Եղնիկի մեջքի վերքից արյուն էր հոսում, բայց նա նույնիսկ չէր տնքում:

— Վա՜յ, խե՜ղճ,— լացակումեց ոզնին,— այս ի՞նչ օրի ես:

Եղնիկն աչքերը չբացեց:

Ոզնին գունդուկծիկ գլորվեց նապաստակի մոտ:

— Այնտե՜ղ... այնտե՜ղ,— կակազեց նա:

— Այնտեղ՝ ի՞նչ, այնտեղ՝ որտե՞ղ,— նապաստակն ականջները խլշեց և պատրաստվեց ծլկել:

— Այնտեղ մի խեղճ, վիրավոր եղնիկ է պառկած: Գնանք տեսնենք ինչո՞վ կարող ենք օգնել:

— Հա՛,— նապաստակն ականջները կախեց,— գնանք:

Ճանապարհին հանդիպեց աղվեսը:

— Այնտեղ մի վիրավոր եղնիկ է պառկած, պետք է օգնել:

Այսպես իրար իմաց անելով, մասրենու թփի մոտ հավաքվեցին անտառի բոլոր գազանները, շրջապատեցին եղնիկին, խորհրդակցեցին և եկան այն եզրակացության, որ «Խեղճին պետք է օգնել»: Վերքը մաքրեցին, կապեցին: Պառկեցրին փափուկ, փարթամ կանաչ խոտի վրա: Բուն գրեց հերթապահության ցուցակը և կախեց մասրենու ամենաբարձր ճյուղից: Առաջին օրը հերթապահեց ոզնին, ապա աղվեսը, հերթը հասավ գայլին, հետո օձին, անգամ առյուծին: Եվ բոլորն այնքան գոհ էին իրենց ազնիվ արարքից, այնքան էին զարմացած, հիացած իրենք իրենցով, որ եղնիկի առողջական վիճակից բացի ուրիշ ոչինչ իրենց չէր հետաքրքրում: Իրար հանդիպելիս, ողջունելուց առաջ հարցնում էին.

— Ինչպե՞ս է մեր խեղճ եղնիկը: Ուրիշ ի՞նչ կարելի է անել նրա համար, որ շուտ առողջանա:

— Խեղճ եղնիկի ջերմությունը նորից հո չի՞ բարձրացել:

— Այսօր ի՞նչ է կերել խեղճ եղնիկը, ախորժակն այսօր ինչպե՞ս է:

— Աստվա՜ծ իմ, ե՞րբ պետք է ոտքի կանգնի մեր խեղճ եղնիկը:

— Աստվա՜ծ իմ, կտեսնե՞նք նրան նորից առողջ ցատկոտելիս:

Եղնիկը վերջապես ոտքի կանգնեց: Առաջին օրը բարալիկ ոտքերը դողդողում էին, օրորվում էր: Հետո օրը-օրին շուրջը ամեն ինչ պայծառացավ, լուսավորվեց: Մի օր էլ նա նայեց երկնքին, ծառերին, մասրենու ծաղկած թփին և ուրախացած ցատկոտեց տեղում: Հերթապահ ոզնին մուշ-մուշ քնած էր: Եղնիկը քայլեց դեպի մոտակա առվակը, ջրի մեջ իր արտացոլումը տեսավ, հիացավ ինքն իրենով, չէր զգում այլևս թուլություն, քաղց ու ծարավ, և սկսեց պարել:

— Տեսե՜ք, տեսե՜ք,— ձայնեց աղվեսը:

— Ինչպես է գեղեցկացե՜լ,— հառաչեց բուն:

— Մի՞թե սա մեր խեղճ եղնիկն է,— կաղկանձեց գայլը:

— Ինչպե՜ս է գիրացել,— նախանձից պայթելով ասաց աղվեսը:

— Շատ ախորժալի տեսք ունի,— առյուծի բերանի ջրերը գնացին:

— Այո՜,— ոռնաց գայլը:

— Մենք մեր պարտքը կատարեցինք գերազանց,— աղաղակեցին գազանները միաբերան:

— Այո՜... Բուժեցինք նրան:

— Կերակրեցինք:

— Անքուն գիշերներ լուսացրինք նրա մոտ հերթապահելով...

— Եվ եթե կարիք լինի, նորից կօգնենք,— աղաղակեցին բոլորը,— իսկ հիմա ամեն մեկս մեր բաժինն ստանալու իրավունք ունենք,— ասացին և հարձակվեցին, որ հոշոտեն խեղճ եղնիկին: Անտառի օրենքով կարելի էր այդ: Բայց ահա մոտերքում ճայթեց մի հրացան, գազանները փախան... իսկ խեղճ եղնիկը մի երկու օր հետո ապահովապես ապաստանեց անտառամերձ գյուղի դպրոցական կենդանաբանական այգում:



digitised by A.R.A.R.@

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ



## Հնձվոր Սոսը

Հնձվոր եմ ես, տեսեք, տեսեք,
Ես հնձվոր եմ, հնձվոր Սոսը:
Ես ու հայրս հունձ ենք անում,
Եվ հնձածը տուն ենք տանում:
Հնձվոր եմ ես, հնձվոր Սոսը,
Ձեռքեր ունեմ ուժեղ, ճկուն,
Առավոտից մինչ իրիկուն
Հնձվոր հորս եմ ես օգնում,
Հունձ եմ անում ու չեմ հոգնում,
Ինձ գովում է հայրս միշտ էլ,
Ասում է՝ Սոս, լավ ես հնձում:
Դո՛ւք՝ ծույլ տղերք, ասե՛ք ճիշտը,
Իրո՞ք դուք ինձ չեք նախանձում:

## Անահ և թիթեռները

Ձմեռ է, ցուրտ...
Ո՞ւր գնացին թիթեռները հազարագույն.
Գուցե չվել, հեռացել են տաք երկրներ,
Գուցե ցրտից կծկվել են, պատսպարվել
Ծեր ուռենու տաք փչակում,
Կամ էլ գուցե մրջյուններին ընկերացած,
Պահվել են տաք մրջնանոցում:
Ի՞նչ իմանաս, թիթեռներից գուցե ոմանք
Սաստիկ ցրտից գույնը գցել,
Դարձել են ձյան ճերմակ փաթիլ:
Գուցե նրանց հանդիպել է
Իմ տատի պես բարի մի տատ
Եվ բոլորին հավաքել է ու տուն տարել
Եվ տաք թեյով հյուրասիրել...
Գուցե հիմա թիթեռները ուրախացած
պտտվում են

Բարի, բարի տատիկի շուրջ
Եվ խնդրում են.
— Տատի՛, մե՛զ էլ հեքիաթ պատմիր,
Հեքիաթ՝ ծաղկի, գարնան մասին...—
Իսկ ես, գիտե՞ք, ինչ եմ անում,
Դաշնամուրի առաջ նստած նվագում եմ
Եվ սպասում թիթեռների վերադարձին:



digitised by A.R.A.R.@

# ՄԱՐԶԻՉՆԵՐՆ ՈՒ ՍԱՆԵՐԸ



Մարզիչ Վանիկ Գևորգյանը հետևում է իր սաների մրցավեճին

digitised by A.R.A.R.@

Եղբայրներ Վանիկ և Արտավազդ Գևորգյանները անբաժան են սպորտից: Ընտրել են մարզիչի բարդ ու հրապուրիչ մասնագիտությունը: Բռնցքամարտի խմբակում նրանք ընդգրկել են բազմաթիվ խոստումնալի մարզիկների: Նրանցից է Լենինականի № 85 դպրոցի անցյալ տարվա շրջանավարտ Արմեն Գևորգյանը, որը վերջին 2 տարում տարբեր մրցաշարերում 49 հանդիպումներից 48-ն ավարտել է իր օգտին:

Արմենը 1983-ի մարտ ամսին հաղթանակ տարավ Սևաստոպոլ քաղաքում անցկացված համամիութենական պատանեկան առաջնությունում: Այնուհետև 3 անգամ առաջին տեղ գրավեց հանրապետության առաջնություններում, հաղթանակներ տարավ Ելցի քաղաքի միութենական և տեղի մարզական ընկերության մրցաշարերում: Նա մասնակցեց նաև Ուլյանովսկ քաղաքում անցկացված ՍՍՀՄ պատանեկան առաջնությանը, որտեղ միմյանց ետևից 3:0 հաշվով պարտության մատնեց իր բոլոր հակառակորդներին, լրացրեց ՍՍՀՄ սպորտի վարպետի նորման: Այնուհետև ՍՍՀՄ հավաքականի կազմում նա մասնակցեց Քենիայում (Աֆրիկա) կայացած միջազգային մրցաշարին, գրավելով 1-ին տեղ ու արժանանալով պատվոգրի:

Ուլյանովսկում հաջող է հանդես եկել նաև մեկ այլ լենինականցի բռնցքամարտիկ՝ Մեխակ Ղազարյանը: Նրա մարզիչներն են եղբայրը՝ Սարգիս Ղազարյանը և Վանիկ Գևորգյանը:

Մինչ այդ Մեխակ Ղազարյանը արծաթե մեդալ էր շահել ՍՍՀՄ երիտասարդական առաջնությունում, լրացնելով սպորտի վարպետի նորման, ապա ոսկե մեդալի էր արժանացել «Աշխատանքային ռեզերվներ» ընկերության համամիութենական մրցաշարում: Ուլյանովսկում նա բավարարվեց բրոնզե մեդալով: 1984-ին Մեխակը ՍՍՀՄ առաջնության հաղթող ճանաչվեց Կաունաս քաղաքում: Ընդգրկվելով ՍՍՀՄ հավաքականի կազմում, «Դրուժբա» միջազգային մրցաշարում (Հարավային Կորեայում) դարձավ 2-րդ մրցանակակիր: Թբիլիսիի միջազգային մրցաշարում նա 1-ին տեղ գրավեց:

Մեխակն ու Արմենը 1985 թվականի մարտ ամսին մասնակցելու են ՍՍՀՄ ընտրական մրցաշարին՝ աշխարհի առաջնության մրցաշարի ուղեգիրը վճռելու համար:

Մարզիչ Վանիկ Գևորգյանի մյուս սանը՝ Գագիկ Հարությունյանը, վերջերս Հայաստանի բաց առաջնությունում (Կիրովական) դարձավ Հայաստանի չեմպիոն և լրացրեց ՍՍՀՄ սպորտի վարպետի նորման:

**ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ**



Մեխակ Ղազարյան



Գագիկ Հարությունյան



Արմեն Գևորգյան

digitised by A.R.A.R.@

Ն. ՆԱԴԵԺԴԻՆԱ

# ՍԸՐ ՊԻՏԵՐ ՍԿՈՏԸ ԵՎ ՆՐԱ ԿԱՐԱՊԻ ԼԻՃԸ

My best wishes to the children of all countries, because the future of the wonderful world of nature is in their hands. I hope they will look after it better than my generation has done.

Peter Scott.

Moscow. August 1982.



Կարելի էր կարծել, թե ողջ աշխարհի թռչունները թռել-եկել, հավաքվել են Մոսկվայի համալսարանի շենքում: Լսարաններից մեկում տոխակի դայլայլն էր լսվում, սերմնագռավների ճիչը, սարյակների ծաղրականտակները, կարապների կանչը: Մյուսում նոր հրաշք. կոլիբրիները (կրետի չափ թռչուն) թևիկները թափահարելով, ծաղկաբաժակի նեկտարն էին խմում, պինգվինները երթաքայլում էին սառույցի վրա, կարմրակուրծք երկարականջ բզեզների (казарка) ընտանիքը լքել էր գիշատիչ բազեի հարևանությամբ սարքված բույնը: Մի որոշ ժամանակ բազեն ակամա իր հարևաններին պաշտպանում է թռչնի ձվի սիրահար բևեռաղվեսից: Բայց ձագուկները հենց մեծանում են, նա իսկույն էլ վտանգավոր է դառնում: Բազեն հարվածում է նրանց թռիչքի պահին, և մայր թռչունը շտապում է բնից հեռացնել ձագուկներին:

Այս բոլոր հրաշքների բացատրությունը պարզ էր. Մոսկվայի համալսարանում անց էր կացվում թռչնաբանների միջազգային համաժողով: Համաժողովի խորհրդանշանն էր դարձել կարմրակուրծք երկարականջ բզեզը: Այս թռչունը ապրում է միայն ՍՍՀՄ-ում, բայց պատկերված էր երկրագնդի ֆոնի վրա: Ինձ հանձնելով այդպիսի խորհրդանշանով անցաթուղթ, մամուլի թղթակիցն ասաց.

— Գիտե՞ք ով է նկարել այս երկարականջ բզեզը: Սըր Պիտեր Սկոտը:

Երբ ես լսեցի այդ ազգանունը, աչքիս առաջ կանգնեց սառույցներում կորած վրանը, որտեղ գտել էին Անտարկտիդայի բևեռախույզ կապիտան Ռոբերտ Սկոտի դիակը: Յոթանասուներեք տարի առաջ նա որոշել էր ճանապարհ հարթել դեպի անհայտություն, հասնել երկրագնդի այն կետին, որի վրա մարդու ոտք դեռ չէր դիպել՝ Հարավային բևեռ: Բևեռից վերադարձի ճանապարհին Սկոտը զոհվում է... Պահպանվել է կապիտան Սկոտի ճանապարհորդական օրագիրը՝ մի զուսպ պատմություն մարդկային արիության ու խիզախության մասին: Կարդալ այն առանց հուզմունքի չի կարելի:

Սկոտի գրած վերջին տողերն ուղղված են հայրենիքին՝ Անգլիային, որոնցով խնդրում է հոգ տանել ընտանիքի՝ կնոջ և երկամյա որդու՝ Պիտերի մասին...

Պիտեր Սկոտը՝ կապիտանի որդին, իր բարի ու վաստակած համբավն ունի: Հինավուրց առասպելը պատմում է, որ Արթուր թագավորի պալատում հավաքվում էին Անգլիայի թափառական ասպետները: Նրանցից մեկը՝ Լանսելոտը, ասպետության ու ազնվազարմության տիպար էր համարվում: Պիտեր Սկոտին նույնպես կարելի է ազնվական թափառական ասպետ համարել: Եվ ոչ միայն այն պատճառով, որ շրջել է գրեթե ողջ երկրագունդը:

Լանսելոտը փորձանքի մեջ ընկած մարդկանց էր պաշտպան կանգնում: Պիտեր Սկոտը՝ կենդանի բնության ասպետն է: Երեսուն տարի է, ինչ նա ղեկավարում է Բնության պահպանության միջազգային միության հազվագյուտ ու անհետացող կենդանիների հանձնաժողովը: Գիտնականի հավաքած տեղեկությունները ահաբեկող են. կենդանիների հարյուրավոր տեսակներ կանհետանան երկրի երեսից, եթե հոգ չտարվի նրանց նկատմամբ: Որքան էլ հզոր լինեն գիտության հնարավորությունները, անհնար կլինի վերածնել անհետացած տեսակը: Միլիոնավոր տարիների ընթացքում բնության մեջ հավասարակշռություն է հաստատվել, և հայտնի չէ, թե ինչպիսիք կլինեն հետևանքները, եթե կյանքի շղթայից դուրս ընկնի, թեկուզ, ամենափոքր մի օղակը: Եվ կարելի՞ է արդյոք զալիք սերունդներից խլել կենդանական աշխարհի հետ շփման բերկրանքը, այն ուրախությունը, որով համակվում ես կռունկների երամը տեսնելիս,



digitised by A.R.A.R.@

թռչող կարապների ձայնը լսելիս, երբ մարդու տան հարևանությամբ բույն հյուսած արագիլի վստահությունն են ընդունում որպես նըվեր:

Այսպես ծնվեց հատուկ մի գիրք: Նրա մեջ մտան հազվագյուտ դարձած կենդանիների տեսակները, ցուցակն այն կենդանիների, որոնց ուզում են փրկել մարդիկ: Այսուհետև այն երկիրը, որտեղ նման կենդանիներ են ապրում, նրանց ապագայի համար ողջ մարդկության առջև է պատասխանատու:

Պիտեր Սկոտի առաջարկությամբ այդ գիրքըն անվանվեց «Կարմիր»: Կարմիր գույնը և՛ կոչ է անում, և՛ տագնապ է ազդարարում: Տագնապ՝ ներկայի համար և ապագայի:

Տագնապի այդ ազդանշանը հնչեց ողջ աշխարհով մեկ: Միջազգային Կարմիր գրքից անմիջապես հետո իրենց Կարմիր գրքերը ստեղծեցին մեծ թվով պետություններ, այդ թվում և ՍՍՀՄ-ը: Եվ այդ բոլոր երկրներում Պիտեր Սկոտին ճանաչում են, կենդանի բընության պաշտպանությանը նրա նվիրվածության մասին ակնածանքով են խոսում:

Իմանալով, որ Պիտեր Սկոտը համաժողովում է, ես ջանացի հանդիպել նրան: Մենք հանդիպեցինք Տունդրայի փոքրիկ կարապներին նվիրված Պիտեր Սկոտի և դստեր՝ Դաֆիլայի աշխատանքը ցուցադրող վահանակի մոտ:

Ինչի՞ց սկսվեց մեր զրույցը: Մանկության հիշողություններից. իրենց տանը հաճախ Անգլիայի նշանավոր բնագետներ էին լինում: Բևեռից կապիտան Ռոբերտ Սկոտը գրել էր, որ ուզում է իր որդին բնական գիտություններով զբաղվի: Փոքրիկ Պիտերին շատ էր հրապուրում կենդանի բնության գեղեցկությունը: Այդ գեղեցկությունը նա տեսնում էր և՛ ձկան փայլփլող թեփուկի մեջ, և՛ թիթեռի թևիկների գունավորման, և՛ թռչնի սահուն թռիչքի մեջ: Եվ բոլոր տեսածները ջանում էր վերարտադըրել մատիտով ու գունաներկերով: Տղայի մոտ նկարչի տաղանդ էր երևան եկել:

Պիտեր Սկոտն այժմ էլ չի բաժանվում վըրձնից. թե՛ ճանապարհորդությունների ժամանակ, թե՛ տանը՝ Սլիմբրիջում, իր գրքերն է նկարազարդում:

Գրքերից մեկի շապիկին ես տեսա նրա տան լուսանկարը: Այդ տունը բարձր աշտարակի պատճառով ասպետական ամրոցի էր նմանվում: Ներքնահարկում Սկոտ-նկարչի արհեստանոցն է, որի պատուհանները Կարապի լճին են նայում...

Այգում, կալվածքի շուրջը, բազմաթիվ լըճեր ու լճակներ են փայլում հայելու նման: Եվ ողջ Սլիմբրիջը, թռչունների աղմկոտ, բազմաձայն այդ թագավորությունը, վայրի բադերի, սագերի, կարապների ձմեռային ապաստանն է: Այստեղ թռչունների մասին հատուկ կազմակերպություն է հոգ տանում՝ ջրլող թըռչունների տրեստը: Տրեստը կալվածքի շրջակա հողակտորները վարձում և ուսումնասիրում է թռչուններին: Տրեստի նախագահը Պիտեր Սկոտն է:



Կարապները գալիս են Սլիմբրիջ նոյեմբերին: Փոքրիկ Դաֆիլայի համար նրանց ձյունասպիտակ փետուրները միշտ մոտալուտ ձմռան գույն է եղել: Իսկ որքա՜ն շըլացուցիչ փայլ են տալիս այդ փետուրները երեկոյան, երբ լուսարձակներն են լուսավորում Կարապի լիճը:

Փոքրիկ տունդրական առաջին կարապը Սլիմբրիջում ջուրը մտավ 1964 թվի աշնանը: Մեկ շաբաթ անց նրան միացավ ևս 24 կարապ: Ստորջրյա պոմպերը անընդհատ ջուրը հանում էին, չթողնելով, որ լիճը սառչի: Օրը երկու անգամ սայլակով ցորեն էին բերում թռչունների համար: Տարեցտարի նորաբընակների թիվը աճում էր:

Կարապներին անուններ էին տրվում: Մատյանում նրանցից յուրաքանչյուրին հատուկ էջ էր հատկացված, որտեղ գրանցվում էր անու-



digitised by A.R.A.R.@

նը, տարիքը, չվադարձի ժամկետը, ընտանեկան կյանքի մանրամասնությունները, կցվում էին «դիմանկարները», այն հրաշալի լուսանկարները, որ Պիտեր Սկոտի կինն էր անում:

Առավոտյան, թռչնային նախաճաշի ժամանակ անվանականչ էր անցկացվում. Լիմոնն այստեղ է, Փրոգին այստեղ է, Զիպսին այստեղ՛է...

1970 թվին հազարից ավելի կարապներ էին արդեն գրանցվել, և Դաֆիլան ու տրեստի մյուս աշխատողը՝ Մերի Էվանսը, բոլորին գիտեին, յուրաքանչյուր կարապի կարող էին անունով կանչել, ճանաչել «դեմքից»: Այստեղ նրանց օգնում էր նկարիչ Սկոտի դիտողականությունը:

Հայտնի է, որ նույն մատնահետքերով երկրորդ մարդը չկա երկրագնդում: Պիտեր Սկոտը նկարչի սուր աչքով նկատել էր, որ կտուցների վրա միևնույն նկարով երկու կարապ նույնպես չեն լինում: Ֆազիի կտուցին դեղին և սև գույները այլ ձևով էին տեղադրված, քան նրա ընկերուհի Պագիի կտուցին, Դանիելի կտուցին: Գույները իրար են հաջորդում այլ կերպ, քան Դերբիի մոտ:

Դաֆիլա Սկոտը 10 տարեկան աղջնակ էր, երբ կարապներով սկսեց հետաքրքրվել: Այժմ նա երիտասարդ թռչնաբան է: Երկար տարիների ծանոթությունը ամեն մի կարապի հետ հնարավորություն է տվել պարզելու այդ թռչունների շատ առանձնահատկություններ. տեսնելու, թե մատղաշները ինչպե՞ս են ինքնուրույն դառնում, որքա՞ն ժամանակ են ծնողները ձագուկների հետ ապրում, ինչու՞ նրանց ցածր չեն նետում երկար չուի ընթացքում: Մեկ անգամ չէ, որ գիտնականները համոզվում են կարապների ամուսնական առասպելական հավատարմության մեջ:

Սլիմբրիջի վետերաններից մեկը՝ Լանսելոտ ասպետական անունով կարապը, հռչակվել էր ողջ Անգլիայով մեկ: Քսան անգամ նա ձմեռելու էր գալիս Սլիմբրիջ: Վերջին տարիներին նրան արդեն սպասում էին: Աշնանային արևոտ օրերին մեծահասակներն ու երեխաները իրար ուրախությամբ լուր էին տալիս.

— Լսե՞լ եք, ռադիոյով հաղորդել են. Լանսելոտն է նորից եկել: Իսկ երեկոյան նրան հեռուստատեսությամբ ցույց կտան:

Ձմեռողները ու՞ր են չվում գարնանը Կարապի լճից: Չէ՞ որ այնտեղ բույն էին հյուսել: Որտե՞ղ են ճտեր հանում: Պետք էր և դա իմանալ: Եվ 1970 թվի գարնանը Դաֆիլան մեկնեց Հոլանդիա: Այնտեղ նա վեց ծանոթ կարապների հանդիպեց, այդ թվում իր ծանոթ զույգին՝ Փեզանտին ու նրա ընկերուհուն՝ Զիպսիին: Հեռադիտակով նայելիս Դաֆիլան նրանց թաթերին նկատեց իրենց պատրաստած օղակները՝ և խոշոր համար դրոշմված սպիտակ բաձր պլաստմասսայի օղակի վրա:

Սլիմբրիջի օղակով կարապների մասին լուրեր էին գալիս նաև այլ երկրներից. Դանիայից, Իռլանդիայից, Սովետական Միությունից: Գարնանային թռչնային ճանապարհը ձգվում էր հեռու՜, հեռու՜ դեպի արևելք՝ Կարայան ծովի ափերը: Եվ կարապների ուղերթով Պիտեր Սկոտն ընտանիքով ճանապարհվեց դեպի Ցամալ ու ՍՍՀՄ:

Պիտեր Սկոտն առաջին անգամ էր լինում Սիբիրյան տունդրայում: Այնտեղ նա ժամերով թափառում էր, նկարում, հերբարիումներ հավաքում: Դեռևս հույս ուներ հանդիպելու լայն օղակի վրա դրոշմված սև համարով կարապի: Բայց չհանդիպեց, այս անգամ չհանդիպեց: Նշանակում է, առջևում նոր ճանապարհներ են և որոնումներ: Եվ բարեկամներից նամակ ստանալու հույսեր...

Պիտեր Սկոտը շատ բարեկամներ ունի: Նա նամակներ է ստանում Աֆրիկայից, Անդրբևեռից, Անտարկտիդայից, արևադարձային գոտիներից, Հավայան կղզիներից...

Հավայան կարմրակուրծք երկարականջ բզեզի՝ բադի ցեղին պատկանող այդ թռչնի պատմությունը ևս մի օրինակ է կենդանի բնության Պիտեր Սկոտի նվիրվածության:

1950 թվին Սլիմբրիջ բերվեցին հավայան երեք կարմրակուրծք երկարականջ բզեզներ՝ արուն երկու էգի հետ: Ըստ Պիտեր Սկոտի՝ բավական չէ անհետացող տեսակներին Կարմիր գրքում գրանցելը: Անհրաժեշտ է ամեն հնարավոր բան անել նրանց փրկելու համար: Երեսուն օր անց արդեն իրենց փետուրներն էին քչչում 230 հավայան կարմրակուրծք երկարականջ բզեզ: Անհետացող այս թռչունները այնքան էին բազմացել, որ նրանց մի մասը հարազատ Հավայան կղզիներ վերադարձվեցին:

Զրույցի վերջում նրան պատմեցի համամիութենական «Пионер» ամսագրի Կարմիր տետրի մասին, երեխաների՝ կենդանիների և բույսերի պաշտպանների մասին: Ես խնդրեցի սըր Պիտեր Սկոտին մի քանի խոսք գրել:

Ահա, թե ինչ գրեց նա.

«Ամենալավագույն ցանկություններս բոլոր մայր ցամաքների երեխաներին: Մեր հիանալի բնաշխարհի ապագան նրանց ձեռքերում է, և ես հուսով եմ, որ նրանք հոգ կտանեն դրա նկատմամբ ավելի լավ, քան իմ սերնդի մարդիկ: Պիտեր Սկոտ»:

**Թարգմ. Ռ. ԱՂՎԱՆՅԱՆԻ**



digitised by A.R.A.R.@

ՎԱԶԳԵՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# «Զգույշ, կոբրա է»

(եղելություն)



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մեր գյուղից ոչ հեռու կա մի տեղ, ուր գետը դուրս է գալիս լայն բացատ և դանդաղեցնում է վազքը: Գետը տարածվում է, փռվում է և ավազով լցնում փոքրիկ մարգագետնի բոլոր անկյունները:

Գետի հանդիպակաց ափն ամբողջովին երիզված է անտառով: Հեռադիտակով կարելի է տեսնել, թե ինչպես վախվորած վիթն իջնում է ջուր խմելու, սրընթաց վազում են նապաստակներն ու դաշտային առնետները:

Օգոստոսյան հորդառատ անձրևից հետո բացվել էր գրնգուն մի առավոտ: Միջինասիական այս շրջանում այդպիսի անձրևները սովորական էին: Հայրս ու ես պատրաստվեցինք բացատ գնալ:

Ես անմիջապես հագա ճտքակոշիկներս ու անջրանցիկ թիկնոցս: Հայրս բրեզենտն ու պարանը գցեց լաստին, ինձ նստեցրեց վրան, ապա քանդեց պարանը, որով լաստը կապել էր ծառից, և երկար ձողով սկսեց կարգավորել մեր ընթացքը: Գիշերվա տեղատարափից հետո գետը դուրս էր եկել ափերից, ողողել ափամերձ անտառը:

Հայրս որսորդ էր, բայց այսպիսի օրերին որս չէր անում, ջրով ողողված բացատներից, մացառուտներից դուրս էր բերում մոլորված գազաններին և բաց թողնում անտառի մեջ:

Այս անգամ էլ նա ցատկեց ջրի մեջ, երկու վիթ բռնած դուրս բերեց և տարավ անվտանգ մի տեղ, ապա գտավ նապաստակներին ու մի

digitised by A.R.A.R.@

աղվես, որ խրվել էին ջրով լցված բացատի մացառուտներում: Նա փրկեց նաև մի քանի թռչունների, որ խիտ մացառների մեջ գերի ընկած՝ հազիվ թափահարում էին թրջված թևերը:

Արդեն հոգնել էինք և որոշեցինք լաստը տանել դեպի ջրով ողողված բացատի կենտրոնում երևացող կղզյակը, որի վրա կար մենավոր մի ծառ՝ շրջապատված փոքրիկ թփուտներով:

Հայրս իջավ ջրի մեջ, լաստը քաշեց ցամաք և ուզում էր ինձ էլ իջեցնել, երբ հանկարծ նկատեցի կոբրային, որ ծառս եղավ պոչի վրա, բերանը լայն բացեց ու չարությամբ ֆշշացրեց: Գլխի վրա փայլում էին փոքրիկ թասակները:

Վախից լեզուս կապ ընկավ, բայց սթափվելով, մի կերպ բացականչեցի.

— Հայրի՛կ, զգու՛յշ, կոբրա՜ է...

Ձայնիս վրա հայրս շրջվեց: Ամբողջ մի րոպե նրանք նայում էին իրար: Օձը սպառնալից տեսք էր ընդունել, բայց հավանաբար հարձակվելու մտադրություն չուներ:

— Ա՛յս կողմ գցիր բրեզենտը,— չնայելով ինձ՝ ասաց հայրս:

Բռնելով բրեզենտի մի ծայրից, մյուսը մեկնեցի հորս: Նա զգույշ վերցրեց այն և մյուս ձեռքում ձողափայտը պատրաստ պահած, բրեզենտը փռեց կոբրայի կողքին:

— Հո՛ռ, հոռ...— ձայնեց նա՝ հեռանալով կոբրայից և փորձելով ձողափայտի թեթև հպումով նրան տեղաշարժ անել:

Կոբրան չէր կողմնորոշվում, շարունակում էր կանգնած մնալ ու սպառնալից ֆշշալ:

Հետո զգալով հորս խաղաղ տրամադրությունը, դանդաղ ու զգույշ սողաց բրեզենտի վրա, կլորվեց, մի մեծ կծիկ դարձավ: Հայրս խնամքով փաթաթեց բրեզենտը և զգուշորեն տեղափոխեց լաստի վրա:

— Հետաքրքիր է,— ինքն իրեն ասաց հայրս,— տարվա այս ժամանակ բացատում ի՞նչ գործ ունի կոբրան:— Երևի ձվերի վրա է նստել, բայց որտե՞ղ են ձվերը:

— Գուցե թաղե՞լ է հողի մեջ:

— Հնարավոր է, դու՛ էլ փնտրիր:

Արևը կղզյակի փեշերի ավազն ուժեղ տաքացնում էր: Կոբրան բաց տեղում ձու չէր դնի:

Դեսուդեն տանելով մացառները՝ ես վերջապես հայտնաբերեցի ավազի մեջ կիսով չափ թաղված ձվերը:

— Այստե՞ղ են, հայրի՛կ,— կանչեցի ես:

Հայրս բերեց դույլը, մեջը ավազ լցրեց և վրան շարեց ձվերը: Ապա տեղափոխեց լաստի վրա և մենք կղզյակից ետ լողացինք:

Մենք լաստը ուղղեցինք դեպի բացատին հարող լեռնալանջը: Հարմար տեղ փնտրեցինք ժայռի խոռոչում, որը պահպանված էր արևի կիզիչ ճառագայթներից: Կողքից ջուր էր հոսում, խոնավացել էր հողը, բայց տեղը տաքուկ էր:

Սկզբում ավազը շաղ տալով, հայրս զգուշորեն տեղավորեց ձվերը այն դիրքով, ինչպես բացատում էր: Ապա, այդտեղից ոչ հեռու, ետ տվեց բրեզենտի եզրերը:

— Հեռացի՛ր,— զգուշացրեց նա ինձ:

Ես չլսելու տվեցի, որովհետև ուզում էի տեսնել, թե ինչպես կվարվի կոբրան: Ես, իհարկե, այնուամենայնիվ, պատսպարվեցի հորս թիկունքում և ոտնաթաթերիս վրա բարձրանալով, սկսեցի ուշադիր նայել:

Օձը դուրս սողաց փաթաթվածքից և ուշադրություն չդարձնելով մեզ, դիմեց դեպի ժայռախոռոչը, որտեղ հորս հոգատար ձեռքերը խնամքով դասավորել էին նրա ապագա ձագուկներին:

— Տեղը հեռու է մարդկանցից,— ասաց հայրս,— այստեղ նա ձագեր կհանի և հետո նրանց կտանի ժայռերը:

Այնուհետև ես հաճախ այցելում էի կոբրային: Վախենում էի մոտենալ նրա բնին, հեռվից ժամերով նայում էի: Նա միշտ անշարժ պառկում էր նույն տեղը: Բավական էր անցնեի այն քարը, որ հայրս քամիներից պաշտպանելու համար դրել էր բնի մոտ, վայրկենապես գալարվում էր ու ֆշշացնում: Ես սարսափահար ետ էի փախչում, բայց չէի զսպում ինձ ու դարձյալ գնում էի:

Պարզվեց, որ հայրս էլ էր այցելում կոբրային:

Ես նստած էի թփերի մեջ, երբ նկատեցի նրան: Նա իր երկարաճիտ կոշիկներով ուղիղ քայլքով անցնում էր կոբրայի բնի մոտով: Եվ հանկարծ տեսա, որ կոբրան դուրս սողալով բնից, հնազանդորեն գնաց հորս ետևից:

Սկզբում ես շատ վախեցա, բայց տեսնելով, որ կոբրան չի ձգտում հասնել հորս, հանգստացա:

Երեկոյան հայրս բացատրեց:

— Կոբրան վախենում է բնից հեռու գնալ: Բացատում նրա համար լավ էր, իսկ այստեղ մկներ չկան, որ որսա: Ահա, ես էլ օգնում եմ նրան:

Հետևելով հորս, ես էլ փորձեցի օգնել կոբրային, նրա համար մկներ ու թռչուններ էի որսում: Անցնում էի բնի մոտով, դիտավորյալ ուժեղ-ուժեղ դոփելով: Ամեն րոպե ետ էի նայում, փախչում էի բնից ամբողջ ուժով, ինձ թվում էր, թե ուր որ է Սելբիան (ես այդպես էի կոչում նրան) կբռնի ոտքիցս: Բայց նա կարծես չէր նկատում ինձ:

Հաջորդ օրը տեղում չգտա իմ բռնած որսը



digitised by A.R.A.R.@

և հասկացա, որ Սելբիան էր վայելել այն: Իմ հանդեպ նրա վերաբերմունքը նույնպես փոխվել էր: Առաջ ես չէի համարձակվում անցնել այն քարը, որ անվանել էի սահմանասյուն: Իսկ հիմա նրան չէր զայրացնում իմ ներկայությունը:

Այդ ամառ մեզ մոտ քաղաքից պիոներական մի խումբ եկավ էքսկուրսիայի: Տղաներից մի քանիսը բարձրացան լեռները, իսկ աղջիկները լանջերին ծաղիկներ էին հավաքում:

Վախենալով, որ երեխաները պատահաբար կհանդիպեն կոբրային, իսկ նա չէր ների իր հանգիստը խանգարողին, ես սկսեցի հերթապահել նրա բնի մոտ:

Ահա դեռ հեռվից նկատեցի, որ ծաղիկ հավաքող աղջիկը գնում է ուղիղ Սելբիայի բնի վրա: Արդեն մոտենում էր արգելաքարին: Ամբողջ ուժով վազեցի դեպի նա և հասա այն պահին, երբ Սելբիան չարությամբ ֆշշացնում էր՝ պատրաստվելով մահացու թռիչքի: Աղջկա լեզուն բռնվեց, մարմարե արձանի պես քարացել, մնացել էր կոբրայի առջև: Ես առաջ նետվեցի և իմ թիկունքում թաքցրի աղջկան: Զողափայտը առաջ պահած, խիստ ու հաստատ ձայնով ասացի.

— Հանգստացի՛ր, Սե՛լբիա: Լսո՞ւմ ես, հանգստացի՛ր:

Սելբիան դադարեց ֆշշացնել, ապա գալար-գալար իջավ գետին ու սողաց իր բույնը:

Ես շրջվեցի, բռնեցի աղջկա ձեռքը և տարա նրան դեպի աղբյուրը: Նա ջուր խմեց, լվաց դեմքը և ուշքի գալով, ասաց.

— Սարսափելի էր...

Հայրս, որ նույնպես շարունակում էր այցելել Սելբիային, մի օր ասաց.

— Սելբիան արդեն ձագուկներ ունի:

— Գիտեմ, հայրի՛կ,— արձագանքեցի ես:

— Շուտով իր ձագուկներին լեռները կտանի և այլևս չենք տեսնի նրան:

Անցան օրեր: Մի օր էլ հայրս տուն եկավ խիստ հուզված, ձեռքին մի մեծ կապոց:

Կապոցը դրեց սեղանին և սկսեց զգույշ բացել:

Կապոցի միջից, երևաց կոբրայի մեջքը: Մայրս վախից ճչաց.

— Զգու՛յշ... կոբրա է:

— Ո՛չ,— հոգոց հանեց հայրս,— սա ընդամենը նրա կաշին է: Սելբիան չէր կարող առանց պարտքն հատուցելու գնալ մեզանից: Որպես հիշատակ, նա մեզ թողել է իր կաշին՝ աշխատելով շատ կոկիկ դուրս գալ միջից:

Հայրս շատ երկար մշակեց այն, և հնարավոր եղավ վերակերտել Սելբիային: Նա կանգնած էր պոչի վրա, և աչքերում չարություն չկար:

ՀԱՅԿ
ԽԱՉԱՏՐՅԱՆ




# Հավաքորդ կարող է դառնալ ամեն ոք

Հավաքածու կազմելը հրապուրիչ զբաղմունք է: Աշխարհում ինչի հավաքածու ասես, որ մարդիկ չեն կազմել: Մեկը հազվագյուտ գրքեր է հավաքում, մյուսը՝ թանկարժեք նկարներ, երրորդը՝ հին դրամներ: Կան նաև ծովախեցիներ հավաքողներ, զանգեր, դանակներ, ժամացույցներ, սեղաններ, ինքնաեռներ, գդալներ, զենքի տարբեր տեսակներ, ջահեր, գոտիներ, ծխամորճեր, գինիներ ու կոնյակներ, ծովաքարեր, սանդեր, զամբյուղներ, սկահակներ, օճառներ, բաժակներ, կրծքանշաններ, ինքնահոսներ, նույնիսկ ջրաղացաքարեր, հին ավտոներ հավաքողներ:

Մարդիկ հավաքածուներ են կազմել հնագույն ժամանակներից սկսած:

Հավաքածու կազմելը բուռն նախասիրության արգասիք է: Միատեսակ առարկաներ հավաքողը ընդլայնում է իր աշխարհճանաչողությունը, գիտելիքները այդ առարկայի մասին: Հավաքողները միաժամանակ ոչնչացումից ու մոռացումից փրկում են այնպիսի արժեքներ, որոնք մարդկային քաղաքակրթության մեջ և բնության հրաշալիքների շարքում կարևոր օղակ են կազմում: Վերջին հաշվով աշխարհի բոլոր թանգարաններն էլ յուրատեսակ հավաքածուներ են:

Հավաքածու են կազմել նաև մեր հները: Դեռևս մեր թվականությունից առաջ, 6—1-ին դարերում, հայոց Երվանդունիի և Արտաշեսյան գահատոհմերի յուրաքանչյուր թագավոր իր պալատում պահում էր նախնիների մոմաքանդակները կամ նրանց հուշարձանների առանձին պանթեոն էր սարքում, ուր իրենց բնական չափերով կարելի էր տեսնել թագավորի



digitised by A.R.A.R.@

հորը, պապին, ապուպապերին: Դրանք պատկերների ինքնատիպ հավաքածուներ էին, որոնցից միայն բեկորներ են հասել մեզ:

Միջնադարում հարուստ հայերը մագաղաթյա ձեռագրեր էին գնում և հպարտանում իրենց մատյանների հավաքածուներով: Հաճախ նրանք մեծ փրկագին էին տալիս և ձեռք բերում ավարի մատնված հայերեն ձեռագրեր: Այդպիսի մատյաններ շատ կան Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանում:

19-րդ դարում հավաքածու կազմելը լայն տարածում գտավ աշխարհի բոլոր կողմերում: Սկսեցին հավաքածու կազմել նաև հայ մտավորականներից շատերը:

Ուշագրավ է եղել մեծանուն վիպասան Րաֆֆու հնագիտական հավաքածուն: Իր ճանապարհորդությունների ընթացքում Րաֆֆին հավաքել է հայկական, պարսկական 3000-ի հասնող հազվագյուտ հին դրամներ, նուրբ քանդակներ ու նկարներ, արժեքավոր ձեռագրեր: Վիպասանի մահից հետո նրա այրին՝ Աննա Րաֆֆին ամուսնու հնագիտական հավաքածուի դրամները 1896 թվականին տանում է Պետերբուրգ՝ ծախելու: Այստեղ նրան ասող է լինում, որ դրամների այդ հավաքածուին ավելի մեծ գին կտան Լոնդոնում: Եվ Աննա Րաֆֆին գնում է Անգլիա: Բայց Լոնդոնի ճարպիկ գրպանահատները այնպես են գողանում տիկին Աննայի հանդերձի մեջ կարված դրամները, որ նա գլխի էլ չի ընկնում: Այդպես անհայտանում է նշանավոր գրողի հնագույն դրամների մեծարժեք ընտրանին:

Զանազան իրեր հավաքելու սեր է ունեցել հանճարեղ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը: Նա հավաքել էր կենդանիների (գայլ, շուն, արջ և այլն) փոքրիկ արձանիկներ: Դրանք դասավորել էր սեղանի վրա և իր սքանչելի հեքիաթներն ու պատմվածքները գրելու ժամանակ նայում էր դրանց: Թումանյանն ուներ նաև հայկական դրոշմանիշների և գեղեցիկ ծաղկամանների հավաքածուներ:

Արձակագիր Մկրտիչ Արմենը սիրում էր լուցկու պիտակներ հավաքել:

Գրականագետ ու արվեստաբան, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Ռուբեն Զարյանը երկար տարիներ հավաքում էր անգլիացի հանճարեղ դրամատուրգ Շեքսպիրի երկերի հրատարակությունները և Շեքսպիրին նվիրված աշխատությունները: 1964 թվականին նշվում էր Շեքսպիրի ծննդյան 400-ամյակը: Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնում այդ տոնին նվիրված հանդիսավոր երեկոյի ժամանակ Ռուբեն Զարյանի գլխում մի միտք է փայլատակում՝ Շեքսպիրյան իր հավաքածուն նվիրել գիտությունների ակադեմիային և Հայաստանում ստեղծել Շեքսպիրյան գրադարան: Հաջորդ օրը նա իր հավաքած 67 գրքերը՝ մի մասը ռուսերեն ու հայերեն, երկուսը՝ վրացերեն, մեկը՝ անգլերեն, հանձնում է ակադեմիային և արվեստի ինստիտուտում ստեղծվում է Շեքսպիրյան գրադարան: 1967 թվականին Հայաստանի գիտությունների ակադեմիայի նախագահությունը որոշում է այդ գրադարանի հիման վրա Հայաստանում ստեղծել Շեքսպիրագիտության կենտրոն, որի անփոփոխ ղեկավարն է դառնում Ռուբեն Զարյանը: Այժմ այդ կենտրոնի գրադարանն ունի տարբեր լեզուներով շեքսպիրական 3500 գիրք:

1957 թվականից նամականիշեր է հավաքում արձակագիր Վահագն Գրիգորյանը, նրա հավաքածուում այժմ կա հայկական, անգլիական և արվեստի տարբեր ճյուղերին վերաբերող 10 հազարից ավելի նամականիշ: Այդ հավաքածուից կարելի է իմանալ, որ աշխարհում առաջին դրոշմանիշը թողարկվել է Անգլիայում՝ 1840 թվականին: Մինչև հիմա թողարկվել է անգլիական ընդամենը 900 տեսակի նամականիշ: Ներկայումս աշխարհի ուրիշ երկրներում տարեկան թողարկվում է մի քանի տասնյակ, հաճախ էլ հարյուրից ավելի նոր նամականիշեր: Իսկ Անգլիայում տարեկան մի քանի նոր նամականիշ է թողարկվում, որով ասես հաստատվում է Անգլիայի պահպանողական դիմագիծը:

ՆԿ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ





digitised by A.R.A.R.@

Գրականագետ Գառնիկ Անանյանը հավաքում է Եղիշե Չարենցի երկերի հայերեն և օտար լեզուներով լույս տեսած բոլոր գրքերը: Գրականագետ Պիոն Հակոբյանը հավաքել է Խաչատուր Աբովյանի երկերի հայերեն և այլ լեզուներով բոլոր հրատարակությունները՝ մոտ 300 գիրք:

Նոր տարվա հայերեն շնորհավորագրեր է հավաքում մատենագետ Նիկել Ոսկանյանը: Այդ շնորհավորագրերում մեկտեղված են Նոր տարվա առթիվ հայկական հին ու նոր ժամանակների 400-ից ավելի մաղթանք: Անցած 30 տարում Նիկել Ոսկանյանը հավաքել է բոլոր մայր ցամաքներում տպագրված 2 հազարից ավելի հայերեն շնորհավորագիր:

Հավաքածու կազմելու գայթակղությունից զերծ չեմ մնացել նաև ես: 1952 թվականից հավաքում եմ հայերեն օրացույցներ և տարեցույցներ: Հայկական առաջին օրացույցը՝ «Պարզատումարը» լույս է տեսել Վենետիկում, 1513 թվականին: Անցած 471 տարում աշխարհի տարբեր կողմերում լույս է տեսել մոտ 1000 անուն հայերեն օրացույց ու տարեցույց: Դրանց մի մասը բոլորովին չի պահպանվել: Մարդիկ օրացույցի օրվա թերթիկը պոկում են և նետում: Այդ պատճառով էլ օրացույցից ոչինչ չի մնում: Մինչդեռ օրացույցները հետաքրքրական տեղեկություններ են պարունակում համարյա ամեն ինչի մասին: Անցած 32 տարում ես հավաքել եմ տարբեր տարիների 420 անուն օրացույց: Դա հայկական օրացույցների ամենամեծ հավաքածուն է աշխարհում: Այդ օրացույցներից 24-ը նվիրված են բացառապես Պարույր Սևակին:

Շատ հավաքորդներ իրենց հավաքածուները նվիրում են Սովետական Հայաստանի թանգարաններին, գիտական և ուսումնական հաստատություններին: Դա հայրենասիրության պայծառ դրսևորում է: Նյույորքաբնակ գորգավաճառ Հարություն Հազարյանը երկար տարիներ հավաքել է հայերեն ձեռագիր մատյաններ: Մահից մի քանի տարի առաջ նա իր ամբողջ հավաքածուն (397 ձեռագիր) նվիրել է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանին: Հնամյա ձեռագրերի իր ընտիր հավաքածուն (175 մատյան) հայրենիքին է նվիրել նաև սիրիահայ Վարուժան Սալաթյանը: Դրանք հայ մշակույթի թանկարժեք մասունքներ են, որոնցով հարստացել է հայկական ձեռագիր աշխարհահռչակ հավաքատեղի-մատենադարանը:

Հիմա Հայաստանում 12 հազարից ավելի ֆիլատելիստ՝ դրոշմանիշեր հավաքող կա: Բայց պարտադիր չէ, որ ամենքն էլ ֆիլատելիստ դառնան: Հավաքածուներ կազմելու մեջ պետք է դրսևորվի սերը հայրենիքի, գիտության ու արվեստի, քաղաքակրթության հոգևոր ու նյութական արժեքները պահպանելու, հայրենի բնության հանդեպ:

Ծամշադինի շրջանի գյուղերից մեկում ինձ ցույց են տվել տարբեր տեսակի 40 իլիկներ, որ պատրաստվել են վերջին 200 տարում: Դա հրաշալի հավաքածու է և ազգագրական մեծ արժեք ունի: Երևանում ապրողն այդպիսի հավաքածու կազմել չի կարող: Բայց դա պակաս արժեքավոր չէ, քան հազար նամականիշ ունենալը:

Գյուղում ապրողը կարող է հավաքել սանդալոթեր, փայտե հին խաղալիքներ, հայրենի բնությանը բնորոշ մանր գլաքարեր և նման բաներ: Երբեմն էլ ինքը բնությունը և կյանքի պայմաններն են թելադրում մարդուն, թե ինչ կարելի է հավաքել:





digitised by A.R.A.R.@



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԿԱՆԱՉ ԱՊԱԿՈՒ ՀԱՆԵԼՈՒԿԸ

— Ի՞նչ գույնի է կանաչ ապակին:

— Ի՞նչ է նշանակում ինչ գույնի է կանաչ ապակին: Իհարկե, կանաչ,— կպատասխանի ընթերցողը:

Շտապել պետք չէ. կանաչ ապակին կանաչ գույնի չէ: Չե՞ք հավատում: Վերցրեք մի կանաչ ապակի, կոտրտեք և բաժանեք մի քանի մասի: Այդ կտորներից մեկի միջով նայեք լամպի շիկացման թելիկին: Եվ, ի՜նչ խոսք, շիկացման թելիկը կթվա կանաչ:

Ձեր ձեռքում գտնվող ապակու կտորի վրա դրեք մեկ ուրիշ կտոր ևս և արդեն երկշերտ ապակու միջով նորից նայեք լամպի շիկացման թելիկին: Երևի դուք չնկատեք գունային և ոչ մի փոփոխություն, և շիկացման թելիկը առաջվա պես ձեզ թվա կանաչ գույնի: Իսկ եթե փորձը շարունակեք և ապակու երկու կտորների վրա ավելացնեք երրորդ կտորը և եռաշերտ ապակիով նայեք լամպի շիկացման թելիկին, չորրորդ կտորը և քառաշերտ ապակիով նայեք թելիկին, ապա թելիկը կթվա կարմրավուն, իսկ ճնգաշերտ ապակիով նայելու դեպքում՝ մուգ կարմիր գույնի:

Զարմանալի է, չէ՞: Ուրեմն ապակու գույնը կախված է նրա հաստությունից. միաշերտ ապակին կանաչ գույնի է, բազմաշերտը՝ այլ գույնի:

Իսկ հիմա, եթե փորձենք նույն ապակիների միջով ու նույն հաջորդականությամբ դիտել կրակխառնիչի շիկացած ծայրը, ապա քառատակելուն և հնգատակելուն սպասել պետք չէ. եռաշերտ ապակու միջից կրակխառնիչի գույնը մեզ կերևա արդեն մուգ կարմիր: Ահա և երկրորդ եզրահանգումը. ապակու տեսանելի գույնը կախված է ոչ միայն նրա հաստությունից, այլ նաև այն շիկացած առարկայի տեսակից, որը մենք դիտում ենք ապակու միջով: Եռաշերտ ապակին մեզ թըվաց անգույն, երբ մենք նրա միջով դիտեցինք լամպի շիկացման թելիկը, իսկ մյուս անգամ թվաց մուգ կարմիր, երբ նրա միջով մենք դիտեցինք կրակխառնիչի շիկացած ծայրը:

Երբ կրակխառնիչը հանում ենք կրակից, նրա շիկացած ծայրը աստիճանաբար սկսում է սառչել:

Եթե փորձենք այդ ընթացքում նորից նույն ապակիների միջով շարունակել դիտումները, ապա որոշ չափով արդեն սառած կրակխառնիչի ծայրը մուգ կարմիր կերևա ոչ թե եռաշերտ ապակու, այլ երկշերտ ապակու միջով: Մի քիչ ավելի սառչելու դեպքում կրակխառնիչի ծայրը արդեն կարմիր կերևա նույնիսկ միաշերտ ապակու միջով:

Այսպիսով, որքան բարձր է շիկացած մարմնի ջերմաստիճանը, այնքան ավելի հաստ պետք է լինի ապակին, որպեսզի փոփոխվի նրա գույնը: Ուրեմն ապակու գունափոխման համար անհրաժեշտ հաստությամբ կարելի է դատել շիկացած մարմնի ջերմաստիճանի մասին: Ահա և երրորդ եզրահանգումը. ապակու տեսանելի գույնը կախված է ոչ միայն նրա հաստությունից, շիկացած առարկայի տեսակից, այլ նաև ջերմաստիճանից:

## ՔԱՌԱՍՈՒՆ ԱՆՄԱՀՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Ինչո՞վ կարելի է բացատրել կանաչ ապակու այս հանելուկային հատկությունները: Նախ, իսկապես, ինչու՞ ապակու գույնը կախված է նրա հաստությունից: Պարզվում է, դա բխում է օպտիկայի մի կարևորագույն օրենքից, որը 200 տարի առաջ հայտնաբերել է Պիեռ Բուգեր անունով մի ֆրանսիացի:



digitised by A.R.A.R.@

Բուգերը հիմնականում նավաշինության հարցերով էր զբաղվում, և այդ բնագավառում կատարած հայտնագործությունների համար ֆրանսիական ակադեմիան նրան շնորհել էր երեք մրցանակ և ընտրել ակադեմիայի անդամ. քառասուն անդամներից մեկը: Բուգերը ծովագնացության գործը ժառանգել էր հորից և կատարում էր ամենայն բծախնդրությամբ: Բայց օպտիկայով զբաղվելու մղումը նրան հանգիստ չէր տալիս: Բուգերը առաջինն էր, որ ուշադրություն դարձրեց լույսի ուժի և լուսավորության հետ կապված խնդիրներին:

Նա եղավ լույսի ուժը չափելու սարքերի առաջին ստեղծողն ու ցույց տվեց, որ Արեգակի լույսի ուժը 300 հազար անգամ մեծ է Լուսնի լույսի ուժից: Բուգերը հայտնաբերեց կլանող միջավայրում լույսի թուլացման օրենքը:

Այդ օրենքի (Բուգերի օրենք) իմաստը հասկանալու համար, դիմենք ոչ այնքան ճըշմարտանման, բայց ակնհայտ մի օրինակի: Ենթադրենք, մենք ներկա ենք յոթ կիլոմետր երկարության մի մրցավազքի: Ենթադրենք, մրցավազքի մասնակիցները դեռ անփորձ են և նրանց մեկ երրորդն է միայն, որ կարողանում է հաղթահարել այդ յոթ կիլոմետր վազքատարածության առաջին կիլոմետրը: Եթե, օրինակ, մրցավազքի են եկել 2187 մասնակից, ապա առաջին կիլոմետրի վերջում արդեն իրենց վազքը կշարունակեն ընդամենը 729 մասնակից, երկրորդ կիլոմետրի վերջում՝ 243, երրորդի վերջում՝ 81, չորրորդի վերջում՝ 27, հինգի վերջում՝ 9, վեցի վերջում՝ 3 մասնակից: Ի վերջո, յոթերորդ կիլոմետրը կանցնի միայն մեկ մրցակից և կդառնա հաղթող:

Դժվար չէ տեսնել, որ նշված թվերի հաջորդականությունը (2187, 729, 243, 81, 27, 9, 3, 1) կազմում է նվազող երկրաչափական պրոգրեսիա, որտեղ յուրաքանչյուր հաջորդ թիվ իր նախորդից փոքր է 3 անգամ:

Եթե այս նույն դատողությամբ ենթադրվի, որ գունավոր ապակին բաց է թողնում իր վրա ընկած լուսային հոսանքի մեկ երրորդը միայն, ապա պարզ կդառնա, որ այդ ապակու կտորի վրա նման մի կտոր դնելիս բաց թողված լուսային հոսքը կկազմի առաջինից անցած հոսքի մեկ երրորդը միայն, կամ, որ նույնն է, ամբողջ լուսային հոսքի մեկ իններորդը: Եթե երրորդ կտորն ավելացնենք, ապա բաց կթողնվի ամբողջ լուսային հոսքի մեկ քսանյոթերորդը միայն և այլն:

Ուրեմն, երբ ապակու հաստությունն աճում է, անցնող լույսի հոսքը փոքրանում է երկրաչափական պրոգրեսիայով: Սա էլ հենց Բուգերի օրենքն է:




Մի բարձի վրա՝
Անթիվ ասեղներ,
Բայց ոչ մի ասեղ
Չես կարող թելել:

Մի փակ տնակ՝
Լարից կախված,
Ելնում է վեր,
Իջնում է ցած:

Մթնով գալիս
Մտնում ես տուն,
Տուն մտնելիս
Ի՞նչն ես փնտրում:

Մի սար, մի ձոր,
Երկու բլուր,
Իրար բռնած՝
Գնում են լուռ:

Գիտե՞ք, որ...



# ԱՄԵՆԱ ՀԱԶՎԱԳՅՈՒՏ ԾԱՌԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Հազար տարի կլինի, ինչ վիճում և գուշակություններ են անում այս մասին։ Անհիշելի ժամանակներից ի վեր Մալդիվյան կղզիների ափերին, Սեյշելից Հնդկաստան տանող ճանապարհի կեսին, մարդիկ գտել են հսկայական, բայց դատարկ ընկույզներ։ Սակայն դա միշտ միայն կեղևն է եղել։ Ժամանակին այդպիսի մի ընկույզ թաքցնելու համար Մալդիվիայում ձեռք են կտրել։ Իսկ եթե մեկը հարստանում էր, նրա մասին ասում էին. «Նա ընկույզ է գտել ու թաքցրել»։ Կեղևի մեջ պահված ջուրը, ըստ ավանդության, չեզոքացրել է ամեն տեսակ թույն, բուժել ստամոքսային և այլ հիվանդություններ։ Առաջին անգամ այդ բոլորի մասին պատմել են պորտուգալացի ճանապարհորդները, որոնք այդ ընկույզները Եվրոպա էին հասցրել 1533 թվին։

Ոչ ոք այն ժամանակ դեռ չէր տեսել այդ ծառը, որի վրա նման ընկույզներ էին աճում։ Բայց, չգիտես ինչու, ընդունված էր կարծել, թե ընկույզները ծովի հատակում աճող արմավենիներից էին։

Ոչ միայն ծառերը, այլև ընկույզները երկար ժամանակ առեղծվածային էին մնում։ Նույնիսկ ճանապարհորդները, որոնք Աֆրիկան շրջանցելով ոտք էին դրել Սեյշելյան կղզիները, այդպես էլ չէին տեսել խորհրդավոր «ծովային ընկույզը»՝ «կոկո-դե-մերը»։ Բանն այն է, որ նրանք չէին եղել երկու կղզյակներում Պրասլենում և Կյուրյեզում, որտեղ աճում է այդ հազվագյուտ ծառը։ Եվ միայն 17-րդ դարի վերջին մարդիկ արմավենիների վրա առաջին անգամ տեսան «ծովային ընկույզները»։

Այսօր Պրասլեն կղզում 18 հա մակերեսով տարածքում 4 հազար այդպիսի արմավենի կա։ Ամենից բարձրը 31 մետրի է հասնում։ «Կոկո-դե-մերը»՝ Սեյշելյան արմավենու մի տարատեսակը, այսօր այլևս առեղծված չէ։

Յուրաքանչյուր ծառի վրա տարեկան աճում է 7 մետր բարձրության հասնող երեքից-չորս տերև։ Այդպիսի մի քանի տերևը բավական է խրճիթը ծածկելու համար։ Ինքը՝ ընկույզը, 75 սմ երկարություն ունի և 9—13 կգ է կշռում։ «Կոկո-դե-մերը» իր պտղի մեծությամբ ռեկորդակիր է բույսերի աշխարհում։ Դեռևս կանաչ վիճակում պարունակում է քաղցր, յուղալի հյութ, իսկ հասուն պտուղների մեջ փղոսկրի գույնի ամուր միջուկն է։

Սկզբում արմավենուն գիտական անուն էին տվել՝ Լոդոիցեա մալդիվյան, որը սակայն ճիշտ չէր բնութագրում նրան։ Մալդիվյան կղզիներում ծառեր ամենևին չեն աճում։ Այժմ անվանումը փոխել են՝ «Սեյշելյան»։

Այդ տեսակի ամենահին ծառը կղզիներում 800 տարեկան է։ Իսկ ինչու՞ է այդքան հազվագյուտ։ Առաջներում մի քանի արմավենիներ էին աճում 3 այլ կղզյակներում։ Բայց նրանց պտուղները, ի տարբերություն կոկոսի, ջրի երեսին չեն մնում, խորասուզվում են։ Եվ միայն այն ժամանակ, երբ պարունակությունը փտում է, կեղևը ջրի երես է ելնում և օվկիանոսով ճանապարհորդության է դուրս գալիս։

Վերջերս Սեյշելյան կղզիների հանրապետության կառավարությունը արգելել է արմավենու այդ տեսակի արտահանումը։ Այն մինչև օրս համարվում է ամենահազվագյուտ ծառն աշխարհում։




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

digitised by A.R.A.R.@



ԳԱՌԶՈՒ (ԳԱՌՆԻԿ ԶՈՒԼՈՒՄՅԱՆ, ԾՆՎ. 1907 Թ.) «ՆԱՎԱՀԱՆԳԻՍՏ», 1979 Թ.

*Հանձնված է տպագրության 18.10. 1984 թ.: Ստորագրված է տպագրության 17.01.1985 թ.: ՎՖ 00697: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 63652: Պատ. 2077: Գինը՝ 15 կ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 18.10.1984 г. Подписано к печати 17.01.85 г. Формат 70×100 1/16. ВФ 00697. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 63652. Заказ. 2077. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

digitised by A.R.A.R.@



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.։

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

digitised by A.R.A.R.@